# Զրույց
# ՉԻՆԱՑԻՆԵՐԻ ՀԵՏ

Ն. ԶԱՐՅԱՆ

Նկ. Հ. ՍԻՐԱՎՅԱՆԻ

Թնդում է «Մոսկվա» հյուրանոցը մեծ
Տոնական ուրախ եռուզեռի մեջ։
Լիֆթերն իջնում ու բարձրանում են վեր,
Ելնում են, իջնում թանկագին հյուրեր։
Նրանք եկել են Պեկինից հեռու,
Պատրաստ են վաղը Բեռլին թռչելու։
Այնտեղ փեստիվալն է խաղաղության.
Ամբողջ աշխարհից այնտեղ պիտի գան
Աղջիկ ու տղա անթիվ շարքերով,
Ով ցանկանում է պահել անխռով
Խաղաղությունը ամբողջ աշխարհի,
Ով քաջ է սրտով ու կամքով՝ բարի։

★

Ես լիֆթով ահա բարձրանում եմ վեր։
Մի խումբ չինացի երիտասարդներ
Ինձ հետ միասին մի լիֆթ են մտած
Եվ ինձ են նայում ջերմ ու սրտաբաց։
Սև կիտելներ կան բոլորի հագին,
Մի աղջիկ մազն է հյուսել ծոծրակին
Ու եղջյուրի պես սիրուն ոլորել.
Նա այդ Մոսկվայում նոր է սովորել։
Ուրախ են նրանք մեզ մոտ, Մոսկվայում,
Նրանք մեզ այնքա՜ն սիրով են նայում,
Այնքա՜ն հպարտ են նրանք մեզանով,
Որ ես ցանկացա որևէ բանով
Նրանց հասկացնել, նրանց հետ խոսել,
Որ նրանց համար ուրախ եմ ես էլ։
Բայց ինչպե՜ս խոսել, իրար հասկանալ.
Ի՜նչ վատ է եղել լեզու չիմանալ։
Եվ հարց եմ տալիս՝ «Դուք... Մաո Ցզե-դո՞ւն»։
Չինաստանի՞ց եք, ուզում եմ ասել։
— Օ՜, Մաո Ցզե-դո՜ւն... Օ՜, Մաո Ցզե-դո՜ւն... —
Շողում են նրանց դեմքերը ջահել։
Սեղմում են ձեռքս, ուրախ ծիծաղում,
Կարծես մենք իրար ծանոթ ենք վաղուց։
Նրանցից մեկը սրափվում է հանկարծ,
Նայում երեսիս ու տալիս է հարց.
— Ստա՞լին...— Ստա՛լին,— հաստատում եմ ես։

Եվ նրանք նորից եղբայրների պես
Ողջունում են ինձ։ Աղմուկ ու հրճվանք։
Մենք արդեն իրար լրիվ հասկացանք։
Ասել՝ Ստալին և Մաո Ցզե-դուն,
Նշանակում է բարեկամություն
Երկու մեծ, հզոր ժողովուրդների
Եվ խաղաղությունն ամբողջ աշխարհի։






*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 3

**ՄԱՐՏ**

1952 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 24-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Գեղեցիկ է Յասխան լիճը. վճիտ է նրա ջուրն ու քաղցրահամ. բայց նա շրջապատված է անծայր Կարա-Կումով: Դարեր շարունակ անմարդաբնակ են եղել նրա ափերը: Այժմ այնտեղ բարձրացել է Գըլ-խավոր Թուրքմենական ջրանցքի բանվորական ավանը, որտեղ այս տարի յոթնամյա դպրոց բացվեց:

ՆԿԱՐՈՒՄ՝ Յասխանի յոթնամյա դպրոցի 4-րդ դասարանի աշա-կերտներ Ալլա Մերեքկուլիևան, Աննա Սարիևան և Գալդիկեն Մերեդո-վան դասերից առաջ։

*Ֆոտո Մ. ՀՈՒՍԵԻՆՈՎԻ*



# Ճամբարական ԹՈՒՐՔՄԵՆՍՏԱՆՈՒՄ

Մեր մեծ պարտիայի և հանճարեղ Ստալինի կամքով սովետական ժողովուրդները ահա երկու տարի է աշխատում են Կոմունիզմի մեծ կառուցումների վիթխարի պլանը իրագործելու համար: Եվ բնական է այն մեծ հետաքրքրությունը, որ հանդես են բերում ոչ միայն մեծահասակները, այլև պիոներներն ու դպրոցականները Կոմունիզմի մեծ կառուցումներից ամենամեծ ջրանցքի նկատմամբ, որն անապատները բերքառատ այգիներ է դարձնելու...

Մեր խմբագրությունը պատանի ընթերցողներից բազմաթիվ նամակներ է ստացել, որոնցով նրանք խնդրում են ավելի մանրամասն պատմել Կոմունիզմի մեծ կառուցումներից ամեն մեկի մասին: Ընդառաջելով նրանց ցանկությանը, խմբագրությունը հատուկ թղթակից գործուղեց Թուրքմենստան: Թղթակիցը եղավ Աշխաբադում, Թախիա-Տաշում և ջրանցքի շինարարության շատ վայրերում:

Ամսագրի այս համարում տպագրում ենք ստացած առատ նյութերի մի մասը: Օգտագործելով այս նյութերը պիոներական ջոկատները շատ հետաքրքիր հավաքույթներ կարող են կազմակերպել նվիրված Գլխավոր Թուրքմենական ջրանցքին և Թուրքմենստանին:

Հանձնարարելով այս նյութերը ջոկատների զբաղմունքների համար, խմբագրությունն ընթերցողներին խնդրում է ամենահետաքրքիր հավաքույթների մասին գրել և ուղարկել մեզ:

## ԹՈՒՐՔՄԵՆԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

ՅՈՒ. ՏԱՐԱՍՈՎ
(Պատմական գիտությունների թեկնածու)

*Թուրքմենական Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկան Սովետական Միության ամենահարավային երկրամասն է: Այդտեղ դարեր շարունակ ապրել են թուրքմենական ցեղերը, որոնք անդադար պայքարել են Իրանի, Խիվայի, Բուխարայի և այլ օտարերկրյա զավթիչների դեմ: Անցյալ հարյուրամյակի առաջին կեսին, Անգլիայի զավթողական ձգտումներից ազատվելու համար, թուրքմենները գերադասեցին միանալ Ռուսաստանին, որի հետ կապված էին դեռ տասնմեկերորդ դարից սկսած: 1881—1885 թվերին Թուրքմենստանն ամբողջովին միացավ Ռուսաստանին: Դադարեցին Իրանի շահերի, Խիվայի ու Բուխարայի խաների հարձակումները թուրքմենական ցեղերի վրա:*




*Չնայած ռուսական ցարիզմի ճնշմանը, անապատային այդ երկիրն ավելի արագ սկսեց զարգանալ: Ավելացավ ջրովի հողերի տարածությունը. բնակչության հիմնական զբաղմունքը դարձավ հողագործությունը. մեծ թափով սկսեց զարգանալ բամբակագործությունը: Օազիսների մոտ առաջացան քաղաքներ՝ Աշխաբադը, Մարին, Կրասնովոդսկը, Թեջենը և ուրիշներ: Կառուցվեցին երկաթուղիներ: Դրանցից ամենամեծը Կրասնովոդսկ—Տաշքենդ գիծն էր, որ Միջին Ասիան կապեց Ռուսաստանի*

*հետ․ 1904 թվին այդ գիծն արդեն հասնում էր մինչև Օրենբուրգ (այժմ Չկալով)։*

*Թուրքմենստանի տնտեսական կապերն ավելի ամրացան։ Դրա հիման վրա ուժեղացավ բարեկամությունը Միջին Ասիայի ժողովուրդների և ռուսական բանվոր դասակարգի միջև։ Այդ բարեկամությունն ավելի ևս ամրապնդվեց Հոկտեմբերյան Մեծ Ռևոլյուցիայից հետո։*

*Ռուսական պրոլետարիատն իր ազդեցությունն ունեցավ թուրքմենական ժողովրդի վրա։ Ռևոլյուցիոն շարժումը քանի գնաց ծավալվեց։ Թուրքմենստանի բանվորներն ու զինվորները եռանդուն կերպով մասնակցեցին 1905 թվի ռևոլյուցիային։ Բոլոր քաղաքների երկաթուղայինները միացան ընդհանուր գործադուլին։*

*Այսպես տարեցտարի ծավալվեց Թուրքմենստանի բանվորների պայքարը շահագործողների դեմ։ Ռևոլյուցիոն շարժումը ղեկավարում էր բոլշևիկյան պարտիայի Աշխաբադի կոմիտեն։*

*1905 թվի նոյեմբերին Թուրքմենստանի երկաթուղայիններն արդեն իրենք գործադուլ արեցին, որը քիչ էր մնում զինված ապստամբության փոխվեր։ Իսկ 1906 թվի հունվարին Ասխաբադի (այժմ Աշխաբադ) կայազորում զինված ապստամբություն տեղի ունեցավ, որը տևեց երեք օր։*

*1917 թվի դեկտեմբերին Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան հաղթանակեց նաև Թուրքմենստանում։ Սակայն կարճ տևեց Սովետական իշխանության գոյությունն այդտեղ։ Սովետական ռեսպուբլիկայի և թուրքմեն ժողովրդի թշնամիները անգլիացիների ցուցմունքով խռովություն բարձրացրին ու տապալեցին աշխատավոր մարդկանց իշխանությունն ամբողջ երկրում։ Բայց Չարջուի բանվորները և Ամու-Դարյայի նավատորմիղի նավաստիները կանգնեցրին թշնամիների գնացքները և ջախջախեցին նրանց։*

*Դրանից հետո Անդրկասպյան մարզ (Թուրքմենստան) ներխուժեցին անգլիական զորքերը։ Սկսվեցին ժողովրդի տառապանքները անգլիական զավթիչների և նրանց զորքերի բռնության տակ։ Բայց պայքարը տիրողների դեմ չէր դադարում, չնայած, որ անգլիական գեներալ Մալլեսոնը արյան մեջ*



## ՆԱՎԹԱԳՈՐԾՆԵՐԻ ՔԱՂԱՔԸ

Գնացքը, որ երեկոյան դուրս է եկել ռեսպուբլիկայի մայրաքաղաք Աշխաբադից, լուսաբացին հասնում է մի մեծ կայարան: Կայարանի շենքի ճակատին երևում է «Նեբիտ-Դաղ» մակագրությունը:

Նեբիտ-Դաղը ռեսպուբլիկայի ամենաերիտասարդ քաղաքն է: Դեռ 20—25 տարի առաջ այնտեղ, որտեղ հիմա տարածվում է բազմահազար բնակչություն ունեցող այս բարեկարգ քաղաքը, տարածվում էր անապատ: Սաքսաուլի թփերի միջև, հարթ աղուտների վրա թափառում էին ջեյրանների հոտերը: Սարերից որսի էին իջնում արծաթափայլ ընձառյուծները: Այնտեղ, որտեղ այժմ գտնվում է կայարանը, կանգնած էր մի հանրակացարան և երեք տնակ, դա 13-րդ կիսակայարանն էր:

Ահա այստեղ էլ սկսեց կառուցվել ապագա քաղաքը:

Վերջին քսաներեք տարում աճել են հազարավոր տներ, առաջացել են տասնյակ փողոցներ, որոնց մայթերի երկայնքով ձգվում են ծաղկանոցներն ու մատղաշ ծառերը: Քաղաքի կենտրոնում գտնվում է Կարլ Մարքսի անվան մեծ հրապարակը, որի շուրջը բազմահարկ շենքեր են բարձրացել: Այս տարի ավարտվեց պարտիայի քաղկոմի, փոստի, հյուրանոցի շենքերի շինարարությունը: Ավարտվում է «Թուրքմեննեֆտ» միավորման վարչության շենքը: Հրապարակից ոչ հեռու երկու մեծ կորպուս կա: Դա Ա. Ս. Պուշկինի անվան ռուսական միջնակարգ դպրոցն է, որն ընդամենը երկու տարվա պատմություն ունի: Այստեղ սովորում են նավթագործների 1600 երեխա: Պարկի մոտ բարձրացել է երկհարկանի գեղեցիկ մի շենք՝ թուրքմենական միջնակարգ դպրոցը: Այստեղ դասերն սկսվեցին 1951—52 ուսումնական տարում:

Նեբիտ-Դաղում ամեն ինչ երիտասարդ է: Ընդամենը երեք տարի է, որ գործում է սառ-



Աշխաբադի քաղաքային պոլիկլինիկայի նոր շենքը:

Ֆոտո Վ. ԴՈՒՆԻՍԻ

խեղդում էր ազատության ձեռք բերելու ամեն մի փորձ:

Զավթելով Անդրկասպյան մարզը՝ անգլիացիներն սկսեցին կողոպտել երկիրը: Նրանք ձգտում էին մարզը դարձնել իրենց գաղութը: Հազարավոր լավագույն մարդիկ զոհվեցին այդ տարիներին. դրանց թվում էին Աշխաբադի 9 կոմիսարները և Բաքվի 26 կոմիսարները: Անգլիական դահիճներին ամեն կերպ օգնում էր Ֆունտիկովի հակաոևոլյուցիոն կառավարությունը: Այդ ժամանակ էր, որ թուրքմեն ժողովուրդը լավ ճանաչեց իր ոխերիմ թշնամիներին՝ անգլիական զավթիչներին:

1920 թվի փետրվարին ամբողջ Թուրքմենստանում Սովետական իշխանություն հաստատվեց: Ռուս մեծ ժողովրդի օգնությամբ և մեծ առաջնորդներ Լենինի և Ստալինի ղեկավարությամբ թուրքմեն ժողովուրդն իր հայրենի երկրից դուրս քշեց անգլիական զորքերին ու սպիտակգվարդիական ջոկատներին:

Անգլիական զավթիչների տիրապետության ծանր տարիները և քաղաքացիական կռիվները խորը հետքեր էին թողել երկրի կյանքում: Համարյա բոլոր գործարանները ավերված էին, գյուղատնտեսությունը քայքայված էր: Երկու անգամ կրճատվել էր ցանքերի տարածությունը, բամբակի ցանքերը պակասել էին տասը անգամ, իսկ անասունների գլխաքանակը՝ երեք անգամ:

Այդ ժամանակ Թուրքմենստանը մտնում էր Թուրքեստանի Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկայի կազմի մեջ, որպես Թուրքմենական մարզ. իսկ 1925 թվի փետրվարին Սովետների Համաթուրքմենական Համագումարը որոշում ընդունեց Թուրքմենական Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկա կազմելու և Սովետական Միության մեջ մտնելու մասին:

Մ. Ի. Կալինինն այդ Համագումարում Թուրքմենստանն անվանեց «Արևելքի փարոս»:

Լուսավոր ուղի բացվեց թուրքմեն ժողովրդի համար: Ջուրը առնվեց ցեղային ավագների ձեռքից և տրվեց ժողովրդին: Այնուհետև, ստալինյան հնգամյակների ընթացքում բուռն կերպով զարգացավ երկրի արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը: Կառուցվեցին խոշոր գործարաններ, իսկ գյուղը հարստացավ բազմաթիվ մեքենաներով:

Ռեսպուբլիկայի գիտնականները ռուս երկրաբանների օգնությամբ այդ տարիներին հարուստ նավթահանքեր գտան: Նավթի հանույթը 1925 թվի համեմատ 273 անգամ ավելացավ: Կարա Բողազ-գոլի սուլֆատի հիման վրա, լայնորեն զարգացավ քիմիական արդյունաբերությունը: Օգտագործվեցին նաև Գաուրդակի և Դարվազայի ծծմբի հան-



Աշխաբադի երաժշտական ուսումնարանի ուսանող Ն. Իշանկուլիևան երաժշտական դպրոցի 4-րդ դասարանի աշակերտուհիներ Ա. Աղաբաևայի և Ս. Ռեջենովայի հետ պարապելիս:

Ֆոտո Մ. ՀՈՒՍԵԻՆՈՎԻ

թավայրերն ու Ջեյհունի քիմիական հումքը:

1950 թվի սեպտեմբերին մեր պարտիայի Կենտկոմը և Սովետական Միության Մինիստրների Սովետը որոշում ընդունեցին Գլխավոր Թուրքմենական ջրանցք կառուցելու մասին:

Այժմ ապագա ջրանցքի տրասսայում մեծ աշխատանք է տարվում: Անապատում եռում է կյանքը: Ավանները քաղաքներ են դառնում, նոր բնակավայրեր են ստեղծվում...

Կառուցվում է Գլխավոր Թուրքմենական ջրանցքը, որն ավելի ևս կգեղեցկացնի երկրի դեմքը: Երևան կգան նոր օազիսներ, որտեղ անսպառ կլինի կենարար ջուրը: Նրանք կյանք ու հարստություն կբերեն այն վայրերին, ուր հիմա կյանք չկա: Անապատը կըծածկվի այգիներով և է՛լ ավելի երջանիկ կդառնա Թուրքմեն ժողովրդի ապագան:

## ԿԴԱՅԼԱՅԼԻ ՍՈԽԱԿԸ

*ԿԱՐԱ ՕՐԱԶՈՎ*

Մոտ է այն օրը, երբ անապատում
Կերգի սոխակը անուշ դայլայլով,
Ու կվարարի Ջեյհունը հորդուն,
Կերգի սոխակը անուշ դայլայլով:

Կխշշան կանաչ, զով մարգագետնում
Ե՛վ մոշավայրին, և՛ փշատենին,
Իսկ այն վայրերում, ուր փուշն է ելնում,
Կծաղկի սիրուն, քնքուշ վարդենին:

Եվ թափառական ջեյրանը այնտեղ
Կհարբի հոսուն, զվարթ ջրերով,
Իսկ այգիներում՝ կանաչ ու շքեղ,
Կերգի սոխակը անուշ դայլայլով:

Կանցնի խորշակը լեռներից այն կողմ,
Կծփան կանաչ անտառները զով,
Ուրախ կհնչեն երգերը դյութող,
Կերգի սոխակը անուշ դայլայլով:

Եվ կնվաճենք անապատը մենք,
Կսանձենք նրան խոր ջրանցքներով,
Երբ անապատը ջրով հեղեղենք,
Կերգի սոխակը անուշ դայլայլով:

*Թարգմ. Հ. ՍԵՎԱՆ*

դիոնը: Դործող ձեռնարկությունների շարքն է մտնում Մեխանիկական գործարանը: Քաղաքը դեռ փայտամածների մեջ է: Կառուցվում են նոր տներ, լայնանում են կանաչ տարածությունները:

Նեբիտ-Դաղը Թուրքմենական նավթագործների մայրաքաղաքն է: Նավթահանքերը 20—30 կիլոմետրի վրա են և քաղաքի հետ կապված են երկաթուղով ու ասֆալտապատ ճանապարհներով: Գնացքով կամ ավտոբուսով դուրս գնում եք հանքերը: Ավազե բլուրները բարձրանում են ավազե հարթության վրա, որն առաջ Կասպից ծովի հատակն է եղել: Բլուրները ծածկված են հորատման աշտարակների անտառով:

Բոլշևիկների կամքով ստալինյան հնգամյակների տարիներին այստեղ հսկայական նավթահանքեր են կառուցվել և փորված են հարյուրավոր նավթահորեր, կառուցված են կոմպրեսորային, էլեկտրական, մեխանիկական արհեստանոցներ: Ուր նայում ես, նավթի վիշկաներ են:

Հատուկ ապարատների միջոցով նավթը հորերից անցնում է ռեզերվուարները և այնտեղից գործարան:

Նավթով հարուստ է Նեբիտ-Դաղի ընդերքը: Ասում են, որ տասնհինգ տարի առաջ, մի նավթահորի փորման ժամանակ նավթը խփեց շատրվանի պես: Տասնութ օրվա ընթացքում նավթահորից ըխեց ավելի քան մի միլիոն տոննա հեղուկ: Նավթահանքերը վերջին հինգ տարվա ընթացքում ավելի քան երեք անգամ ավելացրել են նավթի հանույթը:

Նեբիտ-Դաղի ամենագլխավոր հարստությունը մարդիկ են՝ երկրաբանները, հորատողները, օպերատորները, «սև ոսկու»՝ նավթի արդյունահանողների համերաշխ բազմազգ կոլեկտիվը: Շատ տարիներ նավթահորեր փորում և նավթ են հանում առաջին կարգի վարպետներ՝ Հակոբ Բաղդասարովը և Նիկոլայ Բեղաշվիլին, Գելդի Աննաևը և Միքայել Ավակիմովը, Շիրի Կուրբանովը և Առաքել Պետրոսովը:

Թուրքմենստանի նավթագործները պատվով են կատարում ընկեր Ստալինին տված խոստումը: Խաղաղության հերթափոխի նավթագործները պայքարում են նոր աշխատանքային հաջողությունների համար:

*ՅԱ. ԹՈԴԱԶԵՎՍԿԻ*



# ԱՆԱՊԱՏԸ ՆԱՀԱՆՋՈՒՄ Է

ՍԱՂԱԹԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Թուրքմենական առածն ասում է. «Եթե թռչունը փորձի թռչել Կարա-Կումով՝ կկորցնի իր փետուրները, իսկ եթե մարդն անցնի Կարա-Կումով՝ կկորցնի ոտները»։ Դարեր շարունակ այս առածը հնչել է որպես իրականություն, իսկ այժմ, երբ Կարա-Կումում սկսվել է աշխարհի ամենամեծ ջրանցքի կառուցումը, այն կորցրել է իր ուժն ու հավանականությունը։*



Չարջոու քաղաքի նավաքական դրուժինան անցյալ տարվա ամռանը եղավ Թախիա-Տաշում։ ՆԿԱՐՈՒՄ՝ պիոներները Ամու-Դարյայի վրա։

Ֆոտո Վ. ԴՈՒՆԻՆԻ

*Մի քանի տարի հետո Կարա-Կումով կհոսեն Ամու-Դարյայի հորդառատ ջրերը։ Անապատը կծաղկի։ Սովետական անվեհեր մարդիկ արդեն սկսել են գրոհը Կարա-Կումի դեմ։ Անապատը նահանջում է։*

## ԱՄՈՒ-ԴԱՐՅԱ

*«Ամեն մարդ կարող է ասել, թե երեկ որտեղով է հոսել Ամու-Դարյան, բայց ոչ ոք չի կարող ասել, որտեղով նա կհոսի վաղը»։ Այսպես են ասում թուրքմեն նավաստիները Ամու-Դարյայի մասին։ Եվ իրոք, աշխարհում չկա մի ուրիշ գետ, որ Ամու-Դարյայի չափ փոխած լինի իր հունը։ Դարեր առաջ Ամու-Դարյան հոսում էր այժմյան Կարա-Կումով, դեպի Կասպից ծով, բայց հետագայում նա փոխեց իր հունը և գնաց Արալյան ծով։ Տեղացիներն ամեն օր Ամու-Դարյայից մի նոր հրաշք են սպասում։ Ահա գետային նավը խրվել է ավազի մեջ և տեղից չի շարժվում։ Մի՞թե նավապետը և շտուրմանը չգիտեին ճանապարհը, որ ծանծաղուտ դուրս եկան։ Ո՛չ, նրանք անցնում են երեկվա ճանապարհով։ Երեկ այստեղ խորն էր և իրենց նավի համար անցանելի, բայց Ամուն այսօր փոխել է իր հունը։ Այդպես է Ամու-Դարյան։ Գուցե այնտեղ, որտեղով այսօր նա քշում է իր պղտոր, սրճագույն ջրերը, երեկ անապատ էր, և գուցե վաղն այլևս չի լինելու ափին երևացող այն հնադարյան պարիսպը։ Ամեն ինչ կարելի է սպասել Ամու-Դարյայից։ Իզուր չէ, որ թուրքմենները նրան Ջեյհուն են անվանում, որ նշանակում է «կատաղի»։ Ամու-Դարյան բազմաթիվ անուններ ունի, բոլորն էլ նշանակում են կատաղի կամ խելագար։ Նրա ամենաքնքուշ անունը Ղարիբն է, որը նշանակում է «թափառաշրջիկ»։*

*Ամու-Դարյան Սովետական Միության ամենահորդառատ գետերից մեկն է։ Նրա երկարությունը 2540 կիլոմետր է, իսկ արագությունը մեկ վայրկյանում 4 մետրի է հասնում։ Ամու-Դարյայի ջրերը հարուստ են*

*տիղմով, որը հողագործության համար չափազանց օգտավետ է։ Նա տարեկան 250 միլիոն խորանարդ մետր տիղմ է բերում իր հետ. բայց Ամու-Դարյան այդ ջրերը տանում է Արալյան ծով, ուր նրանք բոլորովին պետք չեն։ Սովետական մարդիկ որոշեցին թույլ չտալ նրան իր թանկագին ջրերը աննպատակ տանելու ուր ցանկանում է։ Շուտով Թախիա-Տաշ հրվանդանի մոտ կփակվի նրա ճամփան և Ամու-Դարյան կանցնի Կարա-Կումով, որտեղ նրա յուրաքանչյուր կաթիլը կդառնա հատիկ, կդառնա բամբակի սպիտակ քուլա, խաղողի ոսկեգույն ողկույզ։*

**ԹԱԽԻԱ-ՏԱՇ**

*Թախիա-Տաշ նշանակում է «Քարե թասակ»։ Իսկապես, քարե թասակի նմանվող այս փոքրիկ հրվանդանը գտնվում է Ամու-Դարյայի ձախ ափին։ Դեռ գետի աջ ափից երևում էին Թախիա-Տաշ հրվանդանի վրա բարձրացած նորաշեն տները, էքսկավատորները և վերամբարձները։ Հսկայական նավահանգստային վերամբարձը հեքիաթային ընձուղտի նման գլուխը մխրճել էր կապույտ երկնքում։*

*Երբ նավակով անցնում էինք դեպի Ամու-Դարյայի ձախ ափը, ինձ ուղեկցող ծերունի ղազախ Աբուլովը ցույց տալով հրվանդանը, ասաց.*

*— Մի տարի առաջ այստեղ միայն մի*



Նուկուս քաղաքի պիոներները դիտում են Թախիա-Տաշ հրվանդանը (ՏԱՍՍ)։




## ԿԱՐԱ ԲՈՂԱԶ-ԳՈԼ

Կասպից ծովի արևելյան ափին ընկած է մի հսկայական, խորհրդավոր ծոց, որը ավելի ճիշտ և՛ ծոց է, և՛ լիճ։

Հարյուրամյակներ շարունակ այդ լիճ-ծոցը տեղական բնակիչներին անարժեք է իր դառնահամ ջրի առեղծվածային հատկությամբ։ Թուրքմեն ձկնորսներն այդ ծոցը անվանեցին «Կարա Բողազ-գոլ», որ նշանակում է «Սև կոկորդի-լիճ»։

Նման ածականի արժանացած այդ ծոցը պատկանում է աշխարհագրական բացառիկ երևույթների թվին։

Կասպից ծովի ջրերը փոքրիկ նեղուցով ներխուժում են Կարա Բողազ-գոլ և աննայտանում են չգիտես թե ուր։ Այդ էլ տեղական ձկնորսների մոտ ստեղծել է այն կարծիքը, թե իբր ծոցի կենտրոնում խորհրդավոր մի անցք կա, մի «սև կոկորդ», որը կուլ է տալիս Կասպից ծովից եկող ջուրը։

Հիմա արդեն ամեն ոք գիտե, որ այդ ջուրը գոլորշիանում է, որովհետև ծոցը Կասպից ծովի համեմատությամբ չափազանց ծանծաղ է։

Կարա Բողազ-գոլի ջուրը հազար անգամ ավելի աղի է, քան Կասպից ծովինը։ Ծովից այստեղ ընկած ձկները անմիջապես կուրանում են և սատկում։

Այս տարօրինակ ծոցը հանդիսանում է սուլֆատի աշխարհի ամենամեծ բնական ֆաբրիկան։ Նատրի սուլֆատը չափազանց թանկարժեք հումք է քիմիական արդյունաբերության համար։ Ածուխի, գիպսի, կրաքարի, ֆոսֆորի և կվարցի ավազի հետ խառնելով նրանից ստանում են արդյունաբերության և գյուղատնտեսության համար չափազանց անհրաժեշտ կաուստիկական և կալցիացրած սոդաներ, ծծումբ, ածխաթթու, նատրի սուլֆիդ և այլ թանկարժեք նյութեր։

Կարա Բողազ-գոլի աղերի պաշարը անհատնելի է և հանդիսանում է մեր Միության քիմիական արդյունաբերության հումքի անսպառ աղբյուրը։



Թախիա-Տաշի № 1 միջնակարգ դպրոցը։

Ֆոտո Վ. Պ. ԻԲՐՅԱՇԿԻՆԻ

քանի ձկնորսական տնակներ կային, իսկ հիմա տեսեք, թե ի՞նչ է կատարվում։

Իսկ թե ինչ էր կատարվում այնտեղ, մենք տեսանք, երբ ոտք դրեցինք հրվանդանի վրա։

Աջ ու ձախ սլացող բազմաթիվ ավտոմեքենաների սուլոցները, հզոր էքսկավատորների հռնդյունը, եռացող աշխատանքը մեզ իրենց հորձանքի մեջ առան և մի պահ թվաց, թե գտնվում ենք մեծ քաղաքում։

Նոր ստեղծված նավահանգստում տասնյակ նավեր էին կանգնած։ Այստեղ բեռնաթափվում էին Սովետական Միության բոլոր ծայրերից Գլխավոր Թուրքմենական ջրանցքի համար ուղարկված մեքենաներն ու սարքավորումները։

Ափից քիչ հեռու իրար կողքի շարված էին էլեկտրական հզոր տրանսֆորմատորները, որոնք հենց նոր էին բեռնաթափվել։

Շինարարության տեխնիկական մատակարարման բաժնի վարիչ Նայդյոնովը ցույց տալով տրանսֆորմատորները հարցրեց.

— Ճանաչո՞ւմ եք։

— Տրանսֆորմատորներ են,— պատասխանեցի ես չհասկանալով, թե ի՞նչ է ուզում ակնարկել նա։

Նա ժպտալով բարձրացրեց տրանսֆորմատորները ծածկող բրեզենտի ծայրը և ցույց տվեց մարկան։

«Երևանի էլեկտրամեքենաշինական գործարան» կարդացի ես և անսահման հպարտություն զգացի դրա համար։ Այս տրանսֆորմատորները վկա էին, որ Հայաստանի աշխատավորությունն ակտիվ կերպով մասնակցում է Կոմունիզմի մեծ կառուցումների աշխատանքներին։

Այնուհետև ես Թախիա-Տաշում հաճախակի գովեստներ էի լսում Երևանի տրանսֆորմատորների մասին։

Թախիա-Տաշ հրվանդանի ավանը, որ ընդամենը մի տարվա պատմություն ունի տեղացիների կողմից արդեն «հին» մականունն է ստացել։ Նոր քաղաքը գտնվում է հրվանդանից 4 կիլոմետր հյուսիս՝ անապատում։

Հիդրոհանգույցի շինարարները՝ Թախիա-Տաշի բնակիչները մեծ ոգևորությամբ ու ջերմությամբ են խոսում նոր քաղաքի մասին։ Եթե գնաք Թախիա-Տաշ, նրանցից յուրաքանչյուրը ձեզ կպատմի այդ քաղաքի ծագման ամբողջ պատմությունը։

Թախիա-Տաշ նոր քաղաքի մասին խոսք բացվեց տաս ամիս առաջ։ Հիդրոհանգույցի գլխավոր ինժեներ Իգնատովի առանձնասենյակում մեծ թվով շինարարներ էին հավաքվել։ Նրանք բոլորն էլ խոսում էին ապագա քաղաքի մասին։ Թեև դեռ լավ չէին պատկերացնում, թե ինչպիսին կլինի ապագա քաղաքը, բայց լավ գիտեին, որ այն պետք է լինի գեղեցիկ ու հարմար, մեծ ու կանաչազարդ, բնակիչները չպետք է զգան, որ գտնվում են անապատում։

Շուտով ապագա քաղաքի վայրը ժամանեցին Ստալինյան մրցանակի լաուրեատ, ճարտարապետության ակադեմիկոս Ս. Վ. Վասիլկովսկու գլխավորությամբ մի խումբ ճարտարապետներ։ Ճարտարապետներ եկան նաև Լենինգրադից ու Տաշքենդից։ Նրանք երկար շրջեցին անապատում և որոշեցին քաղաքը կառուցել Քեթմենջի բարձրության վրա։

Այդ բարձրության վրա կանգնած, նրանք

այն ժամանակ լրջորեն խոսում էին քաղաքի փողոցների ուղղության, հրապարակների, պարկերի և լողարանների մասին, մինչդեռ շուրջը անապատային քամին ավազի ամպեր էր բարձրացնում երկինք և ոչ մի ցից դեռևս չէր խփված։

Տաս ամիս է ընդամենը անցել այդ օրից, բայց Թախիա-Տաշ նոր քաղաքն արդեն կանգնած է իր գեղեցիկ շենքերով, ծառազարդ փողոցներով, ակումբով, խանութներով և գործարանով։ Շուտով, երբ ամբարտակը կփակի Ամու-Դարյայի ճամփան, այնտեղ մի մեծ ծով կգոյանա և Թախիա-Տաշը կդառնա գեղեցիկ, կանաչազարդ ծովափնյա քաղաք։ Էլ ինչպե՞ս չհպարտանան Կոմունիզմի այս նոր քաղաքի բնակիչները, ինչպե՞ս չհպարտանանք մենք՝ սովետական մարդիկս։

### ՃԱ՛ՆԱՊԱՐՀՈՐԴ-ՏՆԵՐԸ

Ամբողջ օրը ընկերոջս հետ, որ Տաշքենդի թերթերից մեկի թղթակիցն էր, շրջել էինք նորաշեն քաղաքում։ Անջնջելի տպավորություններով երեկոյան եկանք մեզ հատկացրած տունը՝ հանգստանալու։ Այդ տունը գտնվում էր քաղաքի ծայրին։ Պատուհանները նայում էին անապատին։

Զնայած հոգնածությանը, քնել չէինք կարողանում։ Լուսնյակ գիշեր էր։ Պատշգամբում նստած մերթ դիտում էինք դիմացի անապատը, մերթ էլեկտրական լույսերով ողողված քաղաքը ու պատմում մեր տպավորությունները։

Առավոտյան մի անսպասելի բան պատահեց։ Ընկերս, որ ինձանից շուտ էր արթնացել մի այնպիսի աղմուկ բարձրացրեց, որ ես միանգամից վեր թռա։

— Ի՞նչ է պատահել, ի՞նչ կա։

— Չգիտեմ, չեմ հասկանում,— վրա բերեց նա և ցույց տալով պատուհանների կողմը, ավելացրեց.— ինքդ նայիր։— Ես մոտեցա պատուհանին։ Փողոցի աջ և ձախ կողմերին ծառեր էին տնկում։ Արտակարգ ոչինչ չտեսա։

— Ծառ են տնկում։ Դրա համա՞ր ես աղմկում։

— Եվ դու ոչինչ չե՞ս տեսնում,— զարմացած հարցրեց ընկերս։

### ԳԵՏԸ

Տոքից այրված ավազուտով
Պարզ ու վճիտ գետն է հոսում.
Հորդ, կենարար ջուրը շուտով
Կյանք կփռի անապատում:

Ի՜նչ այգիներ փարթամ ու զով
Կստանանք այստեղ շուտով.
Կերգի սոխակն հազար ձևով
Ծառերի խիտ սաղարթներում:

Սա երազանք չէ բախտավոր,
Սա իրական կյանքն է մեր նոր.
Կքաղենք դեղձ, տանձ ու խնձոր
Մեր բերքառատ այգիներում:

Հայրենիքում իմ բախտավոր
Լավանում է կյանքն օրեցօր.
Ծով է մեզ մոտ բամբակն այսօր.
Նոր հունով է կյանքն ընթանում:

ՆՈՒՐԻ ԱՆՆԱԿԼԻՉ

(Թուրքմենստանի ժողովրդական շահիր)

### ԵՐՋԱՆԿՈՒԹՅԱՆ ՋՐԱՆՑՔԸ

Լուր լսեցինք կառուցումի,
Ցնծում են մեր սրտերը,
Պիտի ծաղկեն Կարա-Կումի
Զոր, ամայի դաշտերը:

Երջանկության ջրանցք է մեր
Ժողովուրդը կառուցում,
Անծայրածիր անապատներ
Պարտեզների վերածում:

Կոլխոզնիկը վառ հույսերով
Ցորեն, գարի կցանի,
Մեծ ջրանցքը նոր լույսերով
Մեզ կոմունիզմ կտանի:

Մենք պատանի պիոներներս
Օգնում ենք մեծ կառուցման,
Որ ծիծաղի մեր կյանքի պես
Սովետական Թուրքմենիան:

ԱՆՆԱԳԵԼԴԻ ՄԵՐԵԴՈՎ

(Աշխաբադի մարզի Գյոկ-Թեփե շրջանի № 2 միջնակարգ դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ)

*— Ի՞նչ կա տեսնելու, բացի ծառատունկից։*

*— Հետաքրքի՛ր է... Բայց չէ՞ որ երեկոյան այս փողոցը չկար, ո՞ւր է անապատը, մեզ գիշերը ուրիշ բնակարա՞ն են փոխադրել։*

*Ես նոր միայն հիշեցի, որ երեկոյան մեր պատուհանները նայում էին բաց անապատին։ Իսկապես հանելուկային էր։ Շտապ հագնվեցինք և դուրս եկանք։ Արդեն ուշ էր։ Քաղաքն իր առօրյա աշխատանքը վաղուց արդեն սկսել էր։*

*Դեռ նոր էինք իջել պատշգամբից, երբ ահռելի դղրդյունով փողոց մտավ մի հսկա քարշիչ։ Նրա ետևից դանդաղորեն շարժվում էր մի նորաշեն տուն, ճիշտ այնպիսին, ինչպիսիք կանգնած էին մեր պատուհանների դիմաց։*

*Քարշիչը տունը տարավ մինչև փողոցի ծայրը և կանգնեցրեց մյուսների կողքին։ Այդ պահին ժպտալով մեզ մոտեցավ Աննա Կոմիսարովան, Հիդրոհանգույցի կոմսոմոլի կոմիտեի քարտուղարը։ Նկատելով մեր զարմանքը, նա սկսեց բացատրել։*

*— Այս տները կառուցվում են տեղական գործարանում, որտեղից ճանապարհորդում են մինչև իրենց մշտական տեղը։ Կարող եք շնորհավորել։ Այսօր մեր քաղաքում մի փողոց ևս ավելացավ։*

## ԴՊՐՈՑԸ

*Հիդրոհանգույցի շինարարներից շատերը Թախիա-Տաշ էին եկել ընտանիքով։ Նրանք, ովքեր դպրոցական երեխաներ ունեին՝ անհանգստանում էին. ո՞րտեղ պետք է սովորեն երեխաները։ Չէ՞ որ իրենց հայտնել էին, թե դպրոց անպայման լինելու է։*

*— Դպրոց կլինի,— վստահ ասում էին շինարարության պետը և գլխավոր ինժեները։ Սակայն հուլիսի վերջն էր արդեն, իսկ դպրոցի շինարարությունը դեռ չէր սկսված։*

*— Շինարարությունն սկսեցին օգոստոսի սկզբին,— պատմում էր դպրոցի դիրեկտոր ընկեր Ցոյ Բեվոն,— մենք չէինք հավատում, թե սեպտեմբերին դասերը կսկսենք, բայց օգոստոսի վերջին դպրոցն արդեն պատրաստ էր։ Մեր զանգը հնչեց Սովետական*



Թուրքմենստանի օազիսներում աճում է ամենալավ բամբակը։ Բերքահավաքի ժամանակ բամբակագործներին օգնության են գնում նաև պիոներները։
ՆԿԱՐՈՒՄ՝ ընդմիջման ժամին աշակերտները գեղարվեստական գիրք են կարդում։
*Ֆոտո Մ. ՀՈՒՍԵԻՆՈՎԻ*

Միության բոլոր դպրոցների զանգերի հետ միասին:

Թվում էր, թե 25 օրում կառուցված դպրոցի շենքը պետք է լիներ փոքրիկ, շտապ կառուցված ժամանակավոր մի շենք: Բայց ոչ, Թախիա-Տաշի դպրոցը տեղավորված է մեծ ու լուսավոր շենքում, ուր ստեղծված են բոլոր հարմարությունները՝ դահլիճ, լաբորատորիաներ, պիոներական սենյակ, գրադարան և տասնյակ կահավորված դասասենյակներ: Իսկ մուտքի մոտ փակցված է լենդանագիր ցուցանակը:

## ԹԱԽԻԱ-ՏԱՇԻ № 1 ՄԻՋՆԱԿԱՐԳ ԴՊՐՈՑ

Առաջին հայացքից «համար մեկը» կարող է ավելորդ թվալ: Բայց ո՛չ. բոլորը գիտեն, որ այժմյան 300 աշակերտները շուտով կկրկնապատկվեն, կեռապատկվեն, քաղաքը կմեծանա ու կբացվեն երկրորդ, երրորդ դպրոցները:

Դպրոցի բակում ուրախ վազվզում են, խաղում երկրորդ հերթի աշակերտները: Մի քանի ամիս առաջ նրանք չէին ճանաչում իրար, ապրում էին մեր հայրենիքի տարբեր քաղաքներում: Ահա խարտիշահեր Ալլա Կուդրյաշովան, նրա թևքի վրա կարմրին է տալիս օղակավարի տարբերանշանը: Երկու ամիս առաջ Ալլան ապրում էր Էստոնիայի Նարվա քաղաքում, իսկ թխաչյա Նելլա Աբաևան եկել է Տաշքենդից: Վորոնեժից է եկել Վերա Նեչյուսովան: Գրեթե բոլոր քաղաքներից էլ կան այստեղ:

Թախիա-Տաշի պիոներները նամակագրական կապ են պահպանում մեր Հայրենիքի շատ քաղաքների ու գյուղերի հետ:

Վեցերորդ «ա» դասարանի պիոներական ջոկատի պիոներները ինձ խնդրեցին Հայաստանի պիոներներին հանձնել հետևյալ նամակը.

### «ԱՐԵՎԱՎԱՌ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԹԱՆԿԱԳԻՆ ՊԻՈՆԵՐՆԵ՛Ր.

Ստալինյան կոչով մեր ծնողները եկել են այստեղ կառուցելու աշխարհի ամենա-



### ԿԱՐԱԿՈՒԼ

Սովետական Թուրքմենստանը առաջավոր անասնապահության ռեսպուբլիկա է: Առանձնապես Թուրքմենստանում մեծ նշանակություն ունի կարակուլաբուծությունը: Կարակուլի մորթին Թուրքմենստանի հպարտությունն է: Թուրքմենական կարակուլը հայտնի է ամբողջ աշխարհում: Բազմաթիվ կոլխոզներ ու սովխոզներ զբաղվում են միայն կարակուլաբուծությամբ: Չարջոու քաղաքում կա կարակուլի գործարան, որտեղ մշակվում են կոլխոզներից ու սովխոզներից ստացված մորթիները: Այդ գործարանը իր արտադրանքը ուղարկում է Սովետական Միության բոլոր ծայրերը:

Կարակուլաբուծության զարգացմանն օգնում են նաև ռեսպուբլիկայի պիոներները: Նրանք իրենց կոլխոզների ֆերմաներում վերցնում են մատղաշ գառների խնամքը:

Նկարում Տաշաուզի մարզի Իլյալինի շրջանի «Կոմունիզմ» կոլխոզի դպրոցի 7-րդ դասարանի աշակերտներ Ամանով Նուրին և Մուրադ Բաբաևը իրենց խնամած գառների հետ:



*մեծ ջրանցքը՝ Գլխավոր Թուրքմենական ջրանցքը։ Այստեղ անապատում կառուցվում է Թախիա-Տաշ քաղաքը։ Մեր աչքի առաջ սովետական մարդիկ, մեր ծնողները հրաշքներ են գործում, նրանց իրենց գործում օգնում են մեր Հայրենիքի բոլոր աշխատավորները։ 25 օրում մեզ համար կառուցեցին մի գեղեցիկ ու հարմար դպրոց, որտեղ մենք այժմ սովորում ենք։*

*Այս ջերմ հոգատարությանը մենք պատասխանում ենք գերազանց սովորելով։ Մենք պարտավորվում ենք դառնալ Հայրենիքին արժանի քաղաքացիներ։*

*Թանկագին ընկերնե՛ր, թեև դուք գտնվում եք հեռու, բայց կարող եք դուք էլ օգնել մեր շինարարությանը։ Դուք կարող եք ծառասերմեր հավաքել ու տնկիներ աճեցնել։ Կարա-Կումը մեծ է և շատ ծառեր կպահանջի։ Կապ պահպանեցեք մեզ հետ, նամակներ գրեք։ Մենք սիրով կպատասխանենք ձեզ և կպատմենք Գլխավոր Թուրքմենական ջրանցքի շինարարության մասին։*

*Ջոկատի հանձնարարությամբ, ջոկխոր հրդի նախագահ՝* Ժորա Ինյակին

*Առաջին օղակի օղակավար՝* Ալլա Կուդրյաշովա

*Երկրորդ օղակի օղակավար՝* Կոլյա Պուստիգին

*Պիոներներ՝* Նելլա Աբաևա, Կոլյա Եգորով, Վոլոդյա Ստեպանով, Տոլյան Կուկլին»։

## ԱՅՆՏԵՂ, ՈՒՐ ՋՈՒՐ ԿԱ

*Մեր օդանավը սլանում է Կարա-Կումի վրայով։ Ներքևում ձգվում են անծայր բարխանները[1], աղուտներն ու կավուտները։ Արևի տակ հաճախակի փայլատակում են փոքր ու մեծ լճակները։ Առաջին հայացքից թվում է, թե Կարա-Կումում շատ ջուր կա։ Բայց այդ լճակների ջուրը դառնաղի է և խմելու ու ոռոգման համար անպետք։ Նրանցից շատերը նույնիսկ ջուր չունեն։ Դա սեղանի աղն է արևի տակ փայլում ջրի նման։*

*Անծայր է Կարա-Կումը, մեծ ու անմարդաբնակ. բայց անապատը Թուրքմենստանի ինը տասներորդն է կազմում։ Մնացած մասը օազիսներն են։*

*Թուրքմենական օազիսները հարուստ են ու բերքառատ։ Ամենալավ երկարաթել ու մետաքսաթել բամբակը մեզ մոտ աճում է Թուրքմենստանում։ Թուրքմենական օազիսներում աճում են ոսկեհատիկ խաղողն ու թուզը, արմավն ու ձիթենին, սոյան ու քունջութը, ձմերուկն ու սեխը։*

*Մենք վայրէջք ենք կատարում Տաշաուզ քաղաքում, որ գտնվում է նշանավոր Խորեզմի օազիսում։ Նոյեմբերի վերջն է, բայց քաղաքի շուկայում թարմ խաղող ու այլ մրգեր են վաճառում։ Ամեն տեղ ձմեռ է արդեն, իսկ այստեղ աշուն է, մրգառատ աշուն։ Նույն առատությունն է Չարջոուում, Թեջենի և Մուրղաբի օազիսներում, Աշխաբադում և այլ ջրառատ վայրերում։ Մինչդեռ Թուրքմենստանում ամենուր հողը նույնն է և նույն արևն է ամենուր։*

*Կարա-Կումին պակասում է միայն ջուրը։ Իսկ ջրի հարցը կլուծի Գլխավոր Թուրքմենական ջրանցքը։ Ամու-Դարյայի ջուրը կհոսի Կարա-Կումով և անապատը վերջնա-*



Գիտաճետազոտական էքսպեդիցիայի ճամբար Կարա-Կումում. *Ֆոտո Վ. ԴՈՒՆԻՆԻ*

*[1] Բարխան— ավազաթումբ։*

*կանապես կնահանջի։ «Շոլստանը»՝ ծարավի աշխարհը, կվերածվի վարդաստանի։ Միլիոնավոր հեկտար հողեր կծաղկեն, կզարգանա գյուղատնտեսությունն ու անասնապահությունը։ Այժմյան Կարա-Կումում կաճեն մերձարևադարձային պտուղներ և վերջնականապես կոչնչացվի երաշտի բունը։ Սովետական մարդու հզոր կամքով Ամու-Դարյայի ջրերը կդառնան առատ բարիքներ։*

## ՀՈՎԻՎԸ

Կոլխոզի հովիվը դեռ վաղ արշալույսին
Դուրս բերել իր հոտը արոտներն է տանում,
Քայլում է մեծ ու կեռ իր մահակը ուսին
Ժպտում է ինքնագոհ, իր հոտով հիանում:

Ուրախ է հովիվը, երգում է, երազում,
Նայում է ավազոտ հեռուներն ու ասում.

—Ջեյհունի ջրերը կհոսեն այստեղով,
Կկտրի ավազի ծարավը դարերով,
Կծաղկի մեր կյանքը, կելնեն նոր քաղաքնե՛ր,
Կկանգնեն դպրոցի, թատրոնի նոր շենքեր:

Ամեն տան հարկի տակ մի արև կկախվի
Անապատը կանաչ դաշտերի կփոխվի,
Կցանենք մենք ցորեն, և՛ բրինձ, և՛ բամբակ,
Կծաղկի Թուրքմենիան Մոսկվայի լույսի
տակ:

Ջեյհունի ջրերը կհոսեն այստեղով
Կզուգվի երկիրն իմ, կծածկվի լույսերով:

*ՋՈՐԵ ԷՄԱՆՈՎ*

(Չարջոուի մարզի Խոջաբասի շրջանի № 1 դպրոցի 6-րդ դասարանի աշակերտ)

# ԿԱՐԱ-ԿՈՒՄԻ ՆԵՐԿԱՆ ԵՎ ԱՊԱԳԱՆ

*Վ. Ն. ՄԻՆԵՐՎԻՆ*

(Գյուղատնտեսական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր, Թուրքմենական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի իսկական անդամ)

Շատերն անապատը պատկերացնում են մի այնպիսի վայր, ուր հավաքված են մարդու համար ամենաահեղ, մահվան չափ վտանգավոր ուժերը և բնության երևույթները՝ անտանելի տոթը, անջրդիությունը, շարժուն ավազները, ավազային մրրիկները՝ «սամումները», թունավոր օձերը, կարիճները:

Այդպես են պատկերված անապատները շատ գրքերում, կինոնկարներում: Մարդիկ տանջվում են տոթից, ծարավից, մոլորվում են բարխանային ավազուտներում...

Նման դեպքերում շատ դժվար է ճշմարտությունը տարբերել գեղարվեստական հնարանքից:

Անապատում իսկապես որ տոթ է լինում, և այն էլ անտանելի տոթ: Բայց անպատճառ լինում է նաև հրաշալի գարուն՝ ծաղիկների այնպիսի անսովոր առատություն, ինչպիսին ուրիշ տեղ չեք տեսնի: Իսկ ձմեռը հաճախ անհրաժեշտ են և՛ տաք մուշտակներ, և՛ մորթե գլխարկներ, և՛ ձեռնոցներ:

Խմելու ջուր իսկապես քիչ է լինում: Բայց անցյալ տարի աշնանը Գլխավոր Թուրքմենական ջրանցքի վրա աշխատող շատ էքսպեդիցիաներին խանգարում էր ջրի չափից դուրս առատությունը և ոչ թե նրա պակասը: Անձրևները լճեր էին գոյացնում ճանապարհներին, խանգարում էին փորման և մյուս աշխատանքներին, իսկ մարդիկ վրաններում հաճախ գիշերն ստիպված արթնանում էին, որովհետև ջուրը լցվում էր նրանց անկողինների տակ:

Անապատը հակադրությունների երկիր է. բնությունն այստեղ «առանց չափի և



Բարխանները Կարա-Կումում (ՏԱՍՍ):

առանց կշռի» է ծախսում իր ռեսուրսները և ուժերը, որոնցից մերթ շատ է լինում, մերթ չի բավականանում բույսերի և կենդանիների կյանքի համար:

Արևը ջերմացնում է երկրագունդը և նրա վրա գտնվող բոլոր կենդանի էակներին: Սակայն անապատում ամառն արևի ջերմությունը չափից շատ է, ուստի բոլոր կենդանի էակները թաքնվում են արևից:

Հյուսիսային անտառներում արջը կերի պակասից և ցրտից իր որջն է մտնում ու քնում ամբողջ ձմեռը, իսկ անապատում կրիան և մի քանի գետնասկյուռներ, խորը թաղվելով գետնի տակ, ուր արևի ջերմությունը չի հասնում, քնում են ամառը: Սակայն նույն կրիայի համար անապատում ձմեռն էլ չափից դուրս ցուրտ է: Ահա թե ինչու չարթնանալով աշնանը ևս, կրիան քնում է մինչև հետևյալ գարունը. տարվա մեջ նա քնում է 9—10 ամիս:

Կանգ է առնում նաև բույսերի կյանքը: Օշինդը, չնայած ամառը կանաչ է մնում, ծաղկում է միայն աշնանը. սաքսաուլը՝ անապատային այդ «ծառը» ծաղկում է գարնանը, սակայն չի հասցնում մինչև տոթերը սերմեր գոյացնել. նրա սերմերը սկսում են գոյանալ միայն աշնանը, երբ տոթն անցնում է և հայտնվում է գիշերվա զովը:

Կարա-Կումում ամառվա շոգ օրերին ավազը տաքանում է 75 և ավելի աստիճան: Իրենց բները և կամ շվաքն են քաշվում գետնասկյուռները, մողեսները, միջատները, նապաստակները, թռչունները: Անապատում ամառվա կեսօրին լիակատար հանգիստ է տիրում, որովհետև յուրաքանչյուր շարժում այդ պահին լի է ծարավից և կիզիչ տոթից մահանալու վտանգով:

Սակայն հենց այդ տոթը, արևի ջերմության այդ մահացու ավելցուկները, միևնույն ժամանակ հանդիսանում են նաև մեր ժողովրդական անհատնում հարստությունը: Չէ՞ որ անապատային տաք կլիման հնարավորություն է տալիս աճեցնել այնպիսի թանկարժեք կուլտուրաներ, որոնք չեն աճում ավելի բարեխառն կլիմայական պայմաններում: Նույնիսկ արևշող Թուրքմենստանում բամբակի ամենաթանկարժեք բարակամազ տեսակներն աճում են միայն ռեսպուբլիկայի հարավային շրջաններում:

Թուրքմենական խաղողը, շնորհիվ անապատային կլիմային, ամենաքաղցրն է. նրա մեկ երրորդը կազմում է շաքարը: Ռեսպուբլիկայի ամենահարավային շրջաններում են միայն աճում ձիթապտուղի, արմավի ծառերը և այլ մերձարևադարձային բույսերը:

Սակայն արևի ջերմության ավելցուկը հարստության է վերածվում միայն ջուր լինելու դեպքում: Առանց ջրի արևից այրված անապատային հողերն անկենդան կմնան:

Գլխավոր Թուրքմենական ջրանցքը սովետական մարդուն հնարավորություն կտա անապատային տարածություններում ստեղծել ծաղկող, խիտ բնակեցված օազիսներ: Այդտեղ արևը դարձյալ այնպես այրող կլինի, ինչպես և առաջ, սակայն նրա ճառագայթները կընկնեն ոչ թե ավազի, այլ կա-

նաչ տերևի վրա, որը, Ամու-Դարյայի ջրի օգնությամբ, արևի էներգիան կդարձնի շաքար, մանրաթել, փայտեղեն, վիտամիններ և այլ, մեզ անհրաժեշտ, բուսական բարիք:

Յուրաքանչյուր դպրոցական շատ լավ գիտե, որ կանաչ տերևը շատ ջուր է գոլորշիացնում, իսկ գոլորշիացման համար պահանջվում է շատ ջերմություն: Հետևապես կանաչ տերևները ոչ միայն ստվեր են գցում գետնի վրա, ծածկելով շենքերն ու մարդկանց արևի ուղիղ ճառագայթներից, այլև հովացնում են օդը, իսկ դաշտապաշտպան անտառաշերտերը, դրա հետ միասին, արգելակում են չոր, երաշտաբեր քամիների ընթացքը: Ահա թե ինչու անապատում կանաչապատվող տարածությունները մարդու համար ունեն վիթխարի նշանակություն: Նրանք փոխում են անապատի կլիման, մեղմացնում այն: Օազիսներն ունեն իրենց «տեղական» կլիման:

Բայց և այնպես ամառը բնակարաններում հեղձուցիչ տոթ է լինում. արևը շենքերը տաքացնում է կտուրների և առաստաղների, պատերի, պատուհանների միջով: Դրա համար էլ Թուրքմենական ջրանցքի նորակառույցների բնակելի և աշխատանքային շենքերը ունենալու են իրենց՝ մարդուն հարմար կլիման: Հատուկ սարքավորումները շենքերում սառեցնելու են օդը: Աշխատավորների ցանկությամբ և կամ, ավելի ճիշտ, բժիշկ հիգիենիստի ցուցումով շենքերում պահպանվելու է ոչ միայն ամենանպատակահարմար ջերմաստիճանը, այլև օդի նորմալ խոնավություն և նրա նորմալ հոսանքը շենքերի ներսում:

Անապատային կլիմայի օգտավետությունը միայն հարավային բուսականության աճեցման մեջ չի կայանում: Անապատի կիզիչ արևը և չոր օդը հրաշալի բուժիչ հատկություն ունեն երիկամների հիվանդություն ունեցողների համար: Այդ պատճառով էլ, մեզ մոտ՝ փոքրիկ Ալի-Բայրամ քաղաքի հնամենի արքայական պալատում, տեղավորված է ՍՍՌՄ ամենալավ երիկամային սանատորիան:

Անապատային կլիմայում առաջանում են բազմաթիվ աղի լճեր և աղուտներ: Շատերը դրանցից բուժիչ հատկություն ունեն և օգտագործվում են կուրորտներ կառուցելու համար:

Թուրքմենստանի տարբեր տեղերում, առանձնապես Թուրքմենական Գլխավոր ջրանցքի երկայնությամբ, սկսում են կառուցել արևային ջնջուղներ, բաղնիքներ, լվացարաններ, ջրի եռացման սարքավորումներ: Ծրագրվում է նաև աղի լճերի ջուրը քաղցրահամ դարձնելու սարքավորում, որը պետք է օգտագործվի անասնապահական շրջաններում:

Այս օրինակները ցույց են տալիս, որ անապատի չար ուժերը այնքան ժամանակ են մնում չար, քանի դեռ մարդը դրանց չի սանձահարել և չի ենթարկել իրեն: Իսկ երբ անապատի տերը դառնում է մարդը և ոչ թե բնությունը, ապա նրան՝ մարդուն սկսում է ծառայել նույնիսկ այն մահաբեր տոթը, որից այնտեղ ամառվա ընթացքում թաքնըվում են բոլոր կենդանի էակները:

Իսկ մարդն անապատին տիրում է առաջին հերթին ջրի օգնությամբ, որը նա ուզածի չափ կարող է վերցնել սոցիալիստական



Տեխնիկ-տոպոգրաֆ Վլադիմիր Զիմինը Բալա-Իշեմ ջրհորի մոտ աշխատելիս: Ֆոտո Մ. ՀՈՒՍԵԻՆՈՎԻ

բարձր տեխնիկայի օգնությամբ: Ահա թե ինչու ամբողջ Սովետական երկիրը խանդավառությամբ մասնակցում է Կոմունիզմի մեծ կառուցումներին:

Սակայն չպետք է մոռանալ, որ Կարա-Կումի բնությունն առավել դաժան է, ամենից քիչ զիջող և մարդու առաջ բազմաթիվ արգելքներ ու դժվարություններ է դնում: Բայց մենք գիտենք, որ մեր աշխատանքն առատորեն կվարձատրվի բնության այն վիթխարի ուժերի կողմից, որոնց դեմ այժմ պայքարում ենք: Մեզ անհամար բարիքներ կտան՝ արևի անհատնում ջերմությունը, հողի բնական հարստությունները, նրա ընդերքում գտնվող հանքային թանկարժեք հանածոները...

Մինչև օրս սովետական բամբակագործության գլխավոր բազան համարվում է Ուզբեկստանը: Իսկ Գլխավոր Թուրքմենական ջրանցքը կառուցելուց հետո, գլխավորապես բամբակի համար, յուրացվելու է մեկ միլիոն երեք հարյուր հազար հեկտար նոր հողամասեր: Դրանք ջրելու համար օգտագործվելու է Ամու-Դարյա գետի ջրերի համարյա մեկ երրորդը: Դրա շնորհիվ Թուրքմենըստանում բամբակի բերքը կաճի 7—8 անգամ: Եվ դա կլինի ոչ պակաս, քան այժմ ստացվում է Ուզբեկստանում:

Մի քանի անգամ կաճի կարակուլի և անասնապահական այլ նյութերի արտադրանքը, վեց անգամ կավելանա մետաքսագործության և անասնապահության կերային բազան: Միայն առվույտը մեր տաք կլիմայում տարեկան կարող է տալ 6—7 բերք: Լայն անտառաշերտերը վիթխարի պատնեշների պես դեմ կկանգնեն անապատային տաք քամիներին, կպահպանեն օազիսները, խաղողի այգիները, մերձարևադարձային բույսերի բերքառատ պուրակները, նորակառույց ավանները, քաղաքներն ու սովխոզները կիզիչ հողմերից: Է՛լ ավելի արտադրանք կտան մեր նավթահանքերը, որովհետև մինչև հիմա նավթահանմանը շատ տեղեր խանգարում էին շարժուն ավազները և անջրդիությունը:

Ռեսպուբլիկայում կստեղծվի մրգերների, մրգերի, ձկնեղենի չտեսնված առատություն:

Ջրանցքի 1100 կիլոմետր երկարություն ունեցող նավագնաց ուղին կհատի, կանցնի Կարա-Կումը: Մարդատար և բեռնատար նավերը կգնան նախկին անապատով:

Այսօրվա պիոներներից շատերը, դրանց թվում և դուք, Սովետական Հայաստանի պիոներներդ, այդ ոչ հեռավոր ապագայում կլինեք բարձրագույն դպրոցների ուսանողներ և արտադրական պրակտիկայի կգնաք Սովետական երկրի տարբեր տեղեր, այդ թվում նաև նախկին Կարա-Կումը: Միչուրինականների նոր ջոկատները կգան նախկին անապատում գտնվող կոլխոզներն ու



սովխոզները, մերձարևադարձային բույսերի պուրակները, ապագա ճիդրոէներգետիկները կգան Թախիա-Տաշի էլեկտրակայանը և պլոտինաները դիտելու, իռիգատորները՝ Գլխավոր Թուրքմենական ջրանցքի ջրային մագիստրալները և իխտիոլոգներն ու ճիդրոբիոլոգները՝ նրա ջրամբարները ուսումնասիրելու:

Իսկ ապագայի մեր զվարթ պիոներները կարող են զվարճալի ճանապարհորդություն կատարել Բաքու — Կրասնովոդսկ — Ներիտ-Դաղ—Արևմտյան Կարա-Կում—Կունյա-Ուրգենչ—Թախիա-Տաշ ջրային ճանապարհով:

Այդ ուղու վրա նրանք կտեսնեն ծաղկող օազիսներ, ճին և նոր նավաճանգիստների վիշկաներ: Նրանք տեղ-տեղ կտեսնեն նաև ճին անցյալի խնամքով պաճպանվող ճուշարձանները, դարեր առաջ այստեղ գտնվող բնակավայրերի մնացորդները:

Մարդն այն ժամանակ չկարողանալով պայքարել բնության տարերքի դեմ, ճեռացել է այստեղից:

Այժմ բոլշևիկների կամքով, մեր սիրելի առաջնորդ Մեծ Ստալինի ցուցումով, սովետական մարդկանց կոլեկտիվ աշխատանքի շնորհիվ այդ ճողերը նորից վերադարձվում են մարդուն և մի քանի անգամ ավելի նյութական բարիքներ կտան, քան տվել են երբևէ:



Երիտասարդ օդաչու Ն. Կ. Գոլիշևը սիստեմատիկաբար բեռներ է տեղափոխում Գլխավոր Թուրքմենական ջրանցք:

Ֆոտո Մ. ՀՈԽՍԵՒՆՈՎԻ

**Համառոտ տեղեկություններ**

• Թուրքմենստանի տերիտորիայի ինննուն տոկոսը անապատ է: Ամենամեծ անապատն այնտեղ Կարա-Կումն է: Նրա տարածությունը կազմում է 350 ճազար քառակուսի կիլոմետր, որը ճավասար է Իտալիայի և Հոլանդիայի տերիտորիային միասին վերցրած:

• Ամու-Դարյան տարեկան 42 միլիոն խորանարդ մետր ջուր է տանում Արալյան ծով: Մոտ ապագայում այդ ջրերը կոռոգեն Կարա-Կումի անջրդի ճողերը:

• Թուրքմենստանում տարեկան 200 պարզ օր է լինում, այնինչ Մոսկվայում լինում է միայն 36 պարզ օր:



Մի քանի ամիս առաջ այստեղ տարածվում էին անծայր ավազաթմբերը: Այժմ բարձրացել է Թախիա-Տաշ նոր քաղաքի բանվորական ավաններից մեկը: Ֆոտո՝ Վ. Պ. ԻՐՐՅԱՆՍԿԻՆԻ

# Աժդարհայի վերջը[1]



(Թուրքմենական հեքիաթ)

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Ագահ էր Բայը, չար ու արյունռուշտ, աշխարհի բոլոր բայերի նման։

Խելոք էր Ամանը, բարի ու համբերատար, ինչպես բոլոր հովիվները և բոլոր հովիվների նման խիզախ էր նա։

Իսկական ջիգիթ[2] էր Ամանը։

Տանջում էր Բայը իր ջիգիթ հովվին, մտրակում էր չգործած հանցանքի համար և բարությունների համար, օրերով չէր կերակրում, ստիպում էր ոտաբոբիկ քայլել շիկացած ավազի վրա և թռչնի նման գիշերել բաց երկնքի տակ։

Ամանը տանում էր այս բոլորը։

Իսկ երբ դանակը ոսկորին հասավ, նա թքեց Բայի շեմքին ու հեռացավ։

Աշխարհը մեծ է ու ընդարձակ, իսկ մերկ ու անօթևան հովվի համար միևնույն է, թե որտեղ կլուսացնի։

Հեռացավ Ամանը հայրենի երկրից։ Գնաց օր ու գիշեր, գնաց արևի ու լուսնի լույսով, գնաց ավազուտներով ու աղուտներով և, մի օր էլ, երբ լույսը բացվեց, նա տեսավ, որ ընկել է մի անծանոթ աշխարհ։

Ծառերն այդ երկրում գաճաճ էին ու անտերև, վարդի թփերին վարդեր չէին բացվում, իսկ փոքրիկ սոխակները դայլայլի փոխարեն ծղրտում էին ծղրիդի նման։

Անտանելի շոգ էր այդ երկրում։ Արևը խանձել էր ամեն ինչ։ Չկային կանաչ մարգագետիններ ու ծաղիկներ, կենդանիներ ու թռչուններ չէին երևում։

Գնում էր Ամանը կիզիչ արևի տակ, շոգից ու ծարավից հազիվ ոտները քարշ տալով։ Շուտով նա հասավ մի ջրհորի, բայց ջրհորը ցամաք էր։ Նրա հատակին փչչում էին միայն շոգից պատսպարված անապատային օձերը։

Ամանը հուսահատված մոտեցավ մի գաճաճ ծառի, որպեսզի նրա ստվերում մի փոքր շունչ քաշի, բայց ծառը ստվեր չուներ։

— Ջո՛ւր,— շշնջացին նրա չորացած շուրթերը։

— Ջո՛ւր,— նրան արձագանքեց անապատը…

— Ջո՛ւր,— ծղրտացին սոխակները։

— Ջո՛ւր,— սվսվացին անտերև ծառերը…

— Ջո՛ւր…— Ամանը ուշաթափ ընկավ ավազների վրա և, եթե վրա չհասներ երեկոն, կցամաքեր կիզիչ արևի տակ։

Երեկոյան զովը մի փոքր սթափեցրեց Ամանին և նա մեծ դժվարությամբ շարունակեց իր ճանապարհը։ Լուսադեմին նա հասավ մի աուլի և առաջին յուրտի շեմքին անուժ վար ընկավ։

Երբ Ամանը աչքերը բացեց, տեսավ որ պառկած է թաղիքի վրա, իսկ կողքին ծալապատիկ նստած է մի ծերունի՝ երկար սպիտակ մորուքով։ Նա ձեռքին մի փոքրիկ կավե սրվակ ուներ, որից ջուր էր կաթեցնում Ամանի շուրթերին։

— Ո՞վ ես դու բարի ծերուկ,— հարցրեց Ամանը։

— Ես դեյխան[3] էի, ջիգի՛թ, իսկ այժմ ինքս չգիտեմ, թե ով եմ։

[1] Աժդարհա— առասպելական հսկա օձ, վիշապ։
[2] Ջիգիթ— կտրիճ։

[3] Դեյխան— գյուղացի, հողագործ։

— Իսկ ո՞ւր է քո հողը, ինչո՞ւ հիմա էլ դեյխան չես։

— Ավազը կերավ, ջիգի՛թ։ Անիրավ Աժդարհան կուլ տվեց ջուրը, իսկ հողը ավազը կերավ։— Եվ ծերունին պատմեց, թե ինչպես իրենց երկրում հայտնվել է Աժդարհան, հսկայական վիշապը, նստել գետաբերանին ու կուլ է տալիս ամբողջ ջուրը։

— Այն օրվանից երբ հայտնվեց Աժդարհան, մեր կանաչ երկիրը չորացավ։ Եկավ ավազը և կուլ տվեց մեր հողերը, խորշակը խանձեց մեր արտերը և մենք այսպես աղքատացանք, ժողովուրդն էլ կոտորվեց։ Մենք էլ մի օր կուլ կգնանք խորշակին,— վերջացրեց ծերունին։

— Իսկ ինչո՞ւ դուք չեք սպանում Աժդարհային և ջուրը խլում նրանից,— հարցրեց Ամանը ծերունուն։

— Ուժեղ է Աժդարհան, ուժեղ ու անսիրտ, որդիս։ Քանի՜ ջիգիթ է գնացել նրա դեմ, բայց բոլորին էլ այրել է Աժդարհան կամ կլանել ջրի հետ։ Ագահ է նա Բայի պես ու չար նրա նման։ Աժդարհային, ջիգի՛թ, կհաղթի միայն նա, ով գիտե Մեծ Ճշմարտության գաղտնիքը։

Եվ ծերունին պատմեց, որ Մեծ Ճշմարտության գաղտնիքը գտնվում է քառասուն բարխանից, քառասուն կավուտից և քառասուն աղուտից այն կողմ, մեծ բարխանի վրա, ուր աճում է հրաշք սպիտակ սաքսաուլը[1]։

— Շատ ջիգիթներ են գնացել Մեծ Ճշմարտության գաղտնիքը բերելու, բայց ճանապարհի կեսին ցամաքել են, որդի՛ս. կամ կուլ գնացել ավազին,— ավարտեց իր խոսքը բարի ծերունին,— մեզ փրկություն չկա Աժդարհայի ձեռքից։

Ամանը տեսավ, որ ծերունու խորշոմած այտերի վրա փայլում են արցունքի կաթիլները։

— Ես կգնամ Մեծ Ճշմարտության գաղտնիքը բերելու, ծերուկ, ես կհասնեմ մեծ բարխանին։

Ծերունին դառնորեն ժպտաց.

— Թո՛ղ, այդ միտքդ, որդի՛ս, ջահել ես դեռ, ափսոս, կցամաքես ճանապարհին։

Բայց Ամանը անդրդվելի էր։ Մի քանի օր հետո, երբ բոլորովին կազդուրվեց, նա ճամփա ընկավ։ Ծերունին տեսնելով, որ չի կարող ետ պահել Ամանին, նրան տվեց իր մոտի կավե սրվակը։

— Առ, այս սրվակը, որդիս, այն քեզ կօգնի դժվարության մեջ։

Ամանը դուրս եկավ երեկոյան և գիշերը անցավ քառասուն բարխանը։ Բայց լուսադեմին նա արևելքից մի ահարկու ձայն լսեց։

— Ե՛տ դարձիր, ջիգի՛թ, քանի դուրս չեմ եկել ես։ Իմ ասեղներով կծակծկեմ քեզ ու կտապակեմ ավազե բովի վրա։ Ե՛տ դարձիր, քանի ուշ չէ։

[1] Սաքսաուլ— անապատային ծառ։



Ամանը մի պահ սարսռաց այդ ահարկու ձայնից, բայց հիշեց ծերունու արցունքները և այսպես պատասխանեց.

— Ո՛չ, հզոր Արև։ Դու ամենակարող ես, բայց ինձ իմ ճանապարհից ետ չես դարձնի։

Այդ ժամանակ հորիզոնի վրա երևաց Արևի հրեղեն գունդը և սկսեց այրել Ամանին, բայց նա շարունակեց իր ճանապարհը կավե տափաստանով։ Քանի Ամանը շատ էր գնում, Արևն ավելի ուժգին էր այրում։

— Հիմա՜, հիմա՜ դու կայրվես,— որոտում էր Արևը։

— Ե՛տ դարձիր, ջիգի՛թ, կայրվես, ջիգի՛թ,— ձայնում էր կավուտը իր հազարավոր ճեղքերից, բայց Ամանը կարծես չէր էլ լսում այդ բոլորը։

Նրա մարմինը խաշվում էր, շրթունքները ճաքճքվել էր կավուտի նման, անտանելի ծարավը այրում էր ներսից։ Նա շրթունքներին մոտեցրեց ծերունու նվիրած սրվակը։ Ամեն անգամ այդ սրվակը մի քանի կաթիլ ջուր էր միայն տալիս նրան, բայց այդ մի քանի կաթիլներն էլ ուժ էին տալիս նրան և նա շարունակում էր իր ճանապարհը։

Այդպես նա անցավ քառասուն կավուտը և ոտք դրեց աղուտի վրա։ Հանկարծ նա հեռվից լսեց մի վայրենի ձայն.

— Ե՛տ դարձիր, ջիգի՛թ, այդ ես եմ գալիս, ես քեզ կայրեմ ու կուլ կտամ մժեղի նման, ես նույնիսկ քո չորացած կմախքը չեմ թողնի ավազի վրա, ես քեզ կոչնչացնեմ, ե՛տ դարձիր։

Բայց Ամանը շարունակում էր իր ճանապարհը։

— Ես եմ անապատի տերը, հզոր խորշակը, ես հաղթում եմ նույնիսկ Արևին, փակում նրա շողերի ճամփան։ Իմ անցած ճանապարհին ոչինչ կենդանի չի մնում, ետ դարձիր, ջիգի՛թ։

Եվ Ամանը տեսավ, թե ինչպես հարավից երկինք բարձրացան դարչնագույն խիտ ամպերը, փակեցին արևի դեմքը։ Դրանից օդը ավելի հեղձուկ դարձավ, տաք ու թունոտ քամին նրա բերանն ու աչքերն էին լցնում ավազի մանր հատիկները։ Ամանը բերանքսիվար ընկավ աղուտի վրա և շրթունքներին սեղմեց փրկարար սրվակը։ Այդպես պառկած մնաց, մինչև խորշակն անցավ։ Բայց նա այլևս չէր կարողանում տեղից բարձրանալ։

— Մեռա՜վ,— շշնջաց աղուտը։

— Մեռա՜վ,— գոչեց Արևը իր ահարկու ձայնով, իսկ հեռվից լսվում էր խորշակի լպիրշ ծիծաղը։

Հանկարծ Ամանի գլխի վերև սկսեցին ամպեր կուտակվել։ Նրանք հով արեցին Ամանին և անձրև տեղացին։

Անձրևի սառը կաթիլները սթափեցրին տապալված ջիգիթին։ Նա ոտնեց տեղից, հասկացավ որտեղ է գտնվում և շարունակեց իր ճանապարհը։ Շուտով վրա եկավ գիշերը և հեշտացրեց նրա ընթացքը։

Լուսադեմին Ամանը հասավ մեծ բարխանին և գտավ սպիտակ սաքսաուլը։

Սաքսաուլի տակ նստած էր մի սպիտակամորուք ծերունի։

— Ինչպե՞ս դու հասար իմ բարխանը,— հարցրեց նա Ամանին։

— Ես հովիվ...

— Ամանն ես գիտեմ,— ընդհատեց նրան ծերունին,— դու ասա, թե ինչպե՞ս հասար իմ բարխանը, ինչպե՞ս չցամաքեցիր ու կուլ չգնացիր խորշակին։

— Ժողովրդի սերը ինձ բերեց,— շշնջաց Ամանը։ Ծերունին բարի ժպտաց և պատմեց նրան Մեծ Ճշմարտության գաղտնիքը։

Նույն օրը Ամանը վերադարձավ։ Այս անգամ ոչ Արևը, ոչ խորշակը ոչինչ չկարողացան անել նրան։ Նրա գլխի վերևով, մինչև ցամաքած աշխարհը հասնելը, լողում էր մի հսկայական ամպ, ստվեր էր անում նրան ու ջուր տալիս։

Երբ Ամանը երևաց առլի ծայրի բարխանի վրա, բոլոր դեյխանները գնացին դիմավորելու նրան, թեև չէին սպասում, թե բերած կլինի գաղտնիքը։ Իսկ երբ իմացան, որ Ամանը գիտե արդեն Ճշմարտության գաղտնիքը, նրան ձեռքերի վրա հասցրին առլ։ Այնտեղ նա պատմեց Մեծ Ճշմարտության գաղտնիքը դեյխաններին և բոլորը միասին գնացին Աժդարհային սպանելու։

Այդ օրը Աժդարհան կատաղել էր։ Իր քառասուն գլուխներից կրակ ու բոց էր արձակում, մռնչում էր ու պոչով մտրակում օդը։

*— Ի՛մն է, ի՛մն է ջուրը. ոչ ոքի չեմ տա...*

*Քառասուն ջիգիթ Ամանի գլխավորությամբ մի անգամից հարձակվեցին Աժդարհայի վրա և միաժամանակ իրենց սրերով կտրեցին նրա բոլոր գլուխները: Այդ ժամանակ աուլի բոլոր դեյխանները, ափին կանգնած, աղեղներից նետեր էին արձակում Աժդարհայի վրա:*

*Պարտված Աժդարհայի կտորները արյան հետ հոսեցին գետի չորացած հունով, հետո եկավ ջուրը, առատ ու հորդ, և իր կենարար կաթիլները սփռեց դաշտերին...*

*Կանաչեցին ծառերը, վարդենիների վրա վարդեր բացվեցին, ուրախ սկսեցին դայլայլել սոխակները և ավազը նահանջեց...*

*Այսպես Մեծ Ճշմարտության գաղտնիքը օգնեց սպանելու դաժան Աժդարհային, իսկ այդ մեծ ճշմարտությունը հետևյալն էր.*

*«Ջարին, Բային և Աժդարհային կարելի է հաղթել միայն ընդհանուր ուժով, ամբողջ ժողովրդով»:*



**Նամակ Թուրքմենստանից**

# ԹԱՆԿԱԳԻՆ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ





1948 թվին մեր դպրոցի բնագիտական խմբակի պարապմունքներից մեկում մենք որոշեցինք մեր դպրոցական հողամասը կանաչազարդելու նպատակով տնկիներ աճեցնել: Մեզ հատկացրին 250 քառակուսի մետր հողամաս, որտեղ մենք ցանեցինք զանազան ծառասերմեր:

1950 թվին մենք ունեինք արդեն մեծ քանակությամբ տնկիներ, որոնց խնամում էին մեր դպրոցի պիոներները բնագիտական խմբակի անդամների ղեկավարությամբ:



Երբ ՍՍՌՄ Մինիստրների Սովետը որոշում ընդունեց Կոմունիզմի մեծ կառուցումների շինարարության մասին, մենք որոշեցինք ավելի շատ տնկիներ աճեցնել Կոմու-

նիզմի մեծ կառուցումները կանաչազարդելու համար:

Մեզ հատկացրին ևս 250 քառակուսի մետր հողամաս, որտեղ մենք ցանեցինք մեր հավաքած ծառասերմերը: Այժմ մեր դպրոցի 1000 քառակուսի մետր հողամասում կան՝ թեղու, ծիրանի, թխկիի, սոճու, ակացիայի, կաղնու և այլ տեսակի ավելի քան 10000 տնկիներ:

Մեր դպրոցի պիոներները ռեսպուբլիկայի պիոներներին կոչ արեցին Կոմունիզմի մեծ կառուցումների կանաչազարդման համար ծառասերմեր հավաքել և տնկիներ աճեցնել: Մեր դպրոցի պիոներներից ամեն մեկը պարտավորվեց 10 կիլոգրամ ծառասերմ հավաքել և 10 տնկի աճեցնել:

Մեր դպրոցն հավաքել է մոտ 1500 կիլոգրամ ծառասերմ: Բացի այդ, մեր հավաքած ծառասերմերից 250 կիլոգրամ մենք ցանել ենք մեզ հատկացրած հողամասում:

Մեր պիոներներից շատերը տնկիներ են աճեցնում նաև իրենց տնամերձ հողամասերում: Շուտով այդ տնկիները նրանք կնվիրեն Գլխավոր Թուրքմենական ջրանցքին: Բոլորի համար հաճելի է իր փոքրիկ աշխատանքով մասնակցել Կոմունիզմի մեծ կառուցումների պատվավոր գործին:

Հայաստանի պիոներնե՛ր և դպրոցականնե՛ր.

Մենք ձեզ կոչ ենք անում օգնել Կոմունիզմի մեծ կառուցումների կանաչազարդման գործին: Նրանց տարածությունները հսկայական են և տնկանյութեր շատ կպահանջվեն: Եկեք հավաքենք ինչքան կարելի է շատ ծառասերմեր և աճեցնենք ավելի շատ տնկիներ Կոմունիզմի մեծ կառուցումների համար:

*Աշխաբադի № 22 իգական միջնակարգ դպրոցի պատանի բնասերների խմբակի հանձնարարությամբ խմբակի ավագ՝ ԷԼԵՆԱ ԲԵԼԱՈՒՍՈՎԱ*

*Անդամներ՝ ԳԱԼՅԱ ԳՈՐԲԵՏՈՎՍԿԱՅԱ, ՌԻՏԱ ԲՐԱԽԱՆՈՎԱ, ԷԼՅԱ ՇԵԼԻԿՈՎՍԿԱՅԱ, ԳԱԼՅԱ ԲԱՋՈՎԱ, ՎԱԼՅԱ ԴՈՄԱՏՈՎԱ, ՌԻՏԱ ԶՈՒԵՎԱ*





## ՄԱՅՐԻԿԻՍ

ՌՈԲԵՐՏ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
(Երևանի № 51 դպրոցի աշակերտ)

Սիրում եմ սրտանց
Մայրիկիս անգին,
Ու օգնում նրան
Փոքր գործով իմ:
Աղբյուրից արագ
Ջուր եմ բերում ես,
Մաքրում տուն ու բակ
Իմ մայրիկի պես:
Երբ ավարտում եմ
Ես գործս շուտով,
Սովորում եմ իմ
Դասերը սիրով:
Իմ օրագիրը
Երբ դու բերրես
Ջրու ու հինգերս
Միշտ կժպտան քեզ:
Երբ տետ է դառնում
Մայրս գործից տուն,
Համբուրում է ինձ
Ու ասում ժպտուն.
«Աղջի՛կս, ժրաջան
Իմ լավ օգնական»:




Բ. ՕՀԱՆՋԱՆՅԱՆ
(Պատմական գիտությունների թեկնածու)

Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Այս տարի մարտի 22-ին լրանում է Բաթումիի բանվորների քաղաքական խոշոր ցույցի 50 տարին։ Այդ ցույցը ղեկավարել է ընկեր Ստալինը։

Դեռ 1901 թվի նոյեմբերին ընկեր Ստալինը մեկնում է Բաթումի, որն այն ժամանակ արդյունաբերական խոշոր կենտրոններից մեկն էր։

Բաթումիի բանվորները շատ ծանր դրության մեջ էին և գործադուլներ էին անում, որպեսզի իրենց դրությունը բարելավեն։ Բայց մինչև 1902 թիվը նրանց գործադուլները անկազմակերպ բնույթ ունեին։ Բանվորների պայքարն ավելի կազմակերպված դարձնելու համար պարտիական ղեկավարություն էր պետք։ Այդ պատասխանատու գործը կատարեց ընկեր Ստալինը։

Բաթումիում եղած ժամանակ նա բանվորական տասնմեկ խմբակ ստեղծեց։ Բայց դա դեռ բավական չէր։ Անհրաժեշտ էր 11 խմբակներից մի կազմակերպություն ստեղծել։ Միավորումը պետք է գաղտնի լիներ։ Այդ լուրջ գործը նույնպես ընկեր Ստալինը կատարեց։

1901 թվի դեկտեմբերի 31-ի գիշերը, նոր տարին դիմավորելու անվան տակ, բանվոր Սիլվեստր Լոմջարիայի բնակարանում տեղի ունեցավ պարտիական այդ տասնմեկ խմբակների դելեգատների կոնֆերենցիան։ Ընկեր Ստալինն այդտեղ պարտիական կազմակերպություն ստեղծեց, որից հետո կոնֆերենցիան ընտրեց պարտիական ղեկավար խումբ՝ ընկեր Ստալինի գլխավորությամբ։

Դրանից հետո բանվորական շարժումն ավելի ուժեղացավ։ Շարժման մեջ մեծ դեր կատարեց ընկեր Ստալինի ստեղծած գաղտնի տպարանը, որտեղ տպագրվում էին բազմաթիվ կոչեր ու թռուցիկներ՝ ռուսերեն, վրացերեն և հայերեն։

Ղեկավար կոմիտեի կոչերով 1902 թվի փետրվարին Ռոտշիլդի գործարանի բանվորները գործադուլ սկսեցին։ Նրանց շուտով հետևեցին մի քանի ուրիշ գործարանների բանվորները։

Մարտի 8-ի գիշերը ցարական ժանդարմերիան ձերբակալեց 32 ակտիվ գործադուլավորների։ Այդ օրը Բաթումիի Կոմիտեն Ստալինի ղեկավարությամբ կազմակերպեց մի խոշոր ցույց։ Ցուցարարները պահանջեցին ազատել ձերբակալվածներին, բայց դրա փոխարեն այդ օրը 300 բանվոր էլ ձերբակալեցին։

Որպես պատասխան ցարական կառավարության ու կապիտալիստների բռնությունների, մարտի 9-ին (այժմ 22-ին) Բաթումիի Կոմիտեն, ընկեր Ստալինի ղեկավարությամբ, մի խոշոր ցույց կազմակերպեց, որի նմանը Բաթումիում և Անդրկովկասում մինչև այդ չէր եղել։ Ցույցի դուրս եկան 6000 բանվորներից ավելի։ Ցուցարարներն Ստալինի առաջնորդությամբ խիտ շարքերով առաջ էին շարժվում։ Նրանց կար-

միր դրոշների վրա մեծ տառերով գրված էին մարտական լոզունգներ։ Ցուցարարները պահանջեցին ազատ արձակել բոլոր բանտարկյալներին և անմիջապես բարելավել բանվորների դրությունը։ Ցարական կառավարությունն այդ ցույցը դիմավորեց զորքով, որը կրակ բացեց անզեն ցուցարարների վրա։ Տեղի ունեցան արյունալի ընդհարումներ։ Տասնհինգ բանվոր սպանվեցին, իսկ 54-ը վիրավորվեցին։ Ցարական կառավարության հրամանով այդ օրը ձերբակալվեցին 500 բանվոր ևս։

Մարտի 12-ին (25) տեղի ունեցավ զոհված բանվորների հանդիսավոր թաղումը։ Այդ օրն ընկեր Ստալինը կազմակերպեց մի նոր, է՛լ ավելի խոշոր ցույց, որի ժամանակ տարածվեցին Ստալինի գրած կոչերը։ Ցուցարարների առաջ ճառով հանդես եկավ Ստալինը և կոչ արեց շարունակել վճռական պայքարը։ Ստալինի ղեկավարած ցույցերի լուրը տարածվեց ամբողջ երկրում։ Բաթումի դեպքերի մասին մանրամասն լուրեր տպագրվեցին «Իսկրա» թերթում, որը ղեկավարում էր Լենինը։ Բաթումի դեպքերն ավելի սթափեցրին Անդրկովկասի բոլոր աշխատավորներին։ Այդ դեպքերից հետո ամբողջ Ռուսաստանում բանվորական շարժումն ավելի ուժեղ թափով ծավալվեց։

Աշխատավորների թափած արյունն ապարդյուն չանցավ։ 1917 թվականի հոկտեմբերին Ռուսաստանի բանվորներն ու գյուղացիները Լենինի—Ստալինի պարտիայի ղեկավարությամբ տապալեցին կապիտալիստների և կալվածատերերի իշխանությունը և հաստատեցին բանվորա-գյուղացիական Սովետական իշխանություն։

---

Ն. Վ. Գոգոլի մահվան հարյուրամյակը

# ՆԻԿՈԼԱՅ ՎԱՍԻԼԵՎԻՉ ԳՈԳՈԼ

Լ. ԱՍՄԱՐՅԱՆ
(Ֆիլոլոգիական գիտությունների թեկնածու)

Նկ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

«Գոգոլը ռուս վիպական արձակում կատարեց այնպիսի հեղաշրջում, ինչպիսին Պուշկինը բանաստեղծության մեջ», գրում է Բելինսկին մեծ գրողի մասին։

Նիկոլայ Վասիլևիչ Գոգոլը ծնվել է Պոլտավայի նահանգում, 1809 թվին։ Նրա հայրը՝ Վասիլի Աֆանասևիչը մանր կալվածատեր էր։ Նա գրում էր ոտանավորներ, իսկ ամենից շատ կոմեդիաներ։

Գոգոլը իր մանկությունն անցկացրեց հոր կալվածքում։ Նրան փոքր հասակում հաճախակի գրավում էր թատրոնը։ Եվ նա այդ ժամանակ հաջողությամբ հանդես էր գալիս կոմիկ պառավների դերերում։

Գոգոլը գրել-կարդալ սովորեց տանը, ապա ընդունվեց Պոլտավայի գիմնազիան։ Այնուհետև նա սկսեց սովորել Նեժինի «Բարձրագույն գիտությունների գիմնազիայում»։ Դա մի փակ դպրոց էր ազնվականների երեխաների համար։ Ուսումն ավարտելուց հետո 1828 թվին տասնիննամյա Գոգոլը ուղևորվեց Պետերբուրգ։ Այստեղ նա ծառայության մտավ։ Այլ կերպ վարվել չէր կարող, քանի որ գտնվում էր կարիքի մեջ։ Բայց նրա ձգտումներն ուրիշ էին։ Նա մտածում էր գրող դառնալ և մեծ գործ կատարել։

«Սառը քրտինքը երևում էր իմ դեմքին, այն մտքից, որ ես փոշու մեջ կկորչեմ, իմ անունը չնշանավորելով ոչ մի գեղեցիկ գործով... Ապրել աշխարհում և չնշանավորել քո գոյությունը, այդ կլիներ սարսափելի...»,— գրում է Գոգոլը իր այդ տարիների մասին։

Պետերբուրգում Գոգոլը ծանոթացավ Պուշկինի հետ, որը հովանավորեց նրա գրական առաջին քայլերը և նրա վրա մեծ ազդեցություն գործեց։

1831 թվին լույս տեսավ «Երեկոները Դիկանկայի մոտ գտնվող գյուղակում» պատմվածքների ժողովածուն։

«Սորոչինյան տոնավաճառը», «Մայիսյան գիշերը» և այլ պատմվածքներ միանգամից գրավեցին ընթերցողի ուշադրությունը։ Դրանք լեցուն էին բարմությամբ և բանաստեղծական անկեղծ զգացումով։ Այդտեղ երիտասարդ Գոգոլը նկարագրում էր ուկրաինական ժողովրդի կյանքն ու սովորությունները և գեղեցիկ բնության սքանչելի պատկերները։ Նա առատորեն օգտագործում էր ժողովրդական ավանդություններ, զրույցներն ու ասացվածքները։ Այս պատմ-

վածքները բաբախված էին ուրախությամբ և նուրբ երգիծանքով: Հետագայում երգիծանքը նրա ստեղծագործության մեջ ավելի ու ավելի կարևոր նշանակություն է ստանում:

Առաջինը Պուշկինն էր, որ գնահատեց Գոգոլի երգիծական տաղանդը: Բայց նենց այդ ժամանակ և, մանավանդ հետո, Գոգոլի ստեղծագործության մեջ ուրախությանը միախառնվում էր կյանքի տխրությունը: Պուշկինը հետո նրա մասին ասել է. «Գոգոլը ուրախ մելանխոլիկ է», իսկ Բելինսկին նրա երգիծանքը բնորոշեց որպես «ծիծաղ արցունքի միջից»:



Առաջին գիրքը Գոգոլին չհանրաճանաչ... 

Առաջին գիրքը Գոգոլին չհանգրստացրեց: Ստեղծագործելու ձգտումը այրում էր նրան: «Զգրել ինձ համար կնշանակի չապրել», գրում էր նա: Այդ պատճառով նա ոչ մի պաշտոնի չէր կպչում: 1835 թվին Գոգոլը Պետերբուրգի համալսարանում պատմության պրոֆեսորի պաշտոն ստացավ: Բայց նա շուտով թողեց այդ աշխատանքը:

Գոգոլն ապրում և ստեղծագործում էր Նիկոլայ I-ի Ռուսաստանում, որտեղ դաժան կերպով հետապնդվում էր այն ամենը, ինչ առաջավոր էր: Պարզ էր, որ մռայլ իրականությունը միայն խիստ դժգոհություն պետք է առաջացներ մեծ գրողի հոգում:

1835 թվին այդ դժգոհությունն արտահայտվեց «Միրգորոդ» և «Արաբեսկներ» գրքերում: Մերթ նա պատկերում էր պատմության հերոսական շրջանը՝ 16-րդ դարի Զապորոժյան կոզակության կյանքը, բոցաշունչ հայրենասեր ծերունի Տարաս Բուլբային, որը հայրենիքի համար սպանում է դավաճան որդուն, մերթ էլ նկարագրում էր իր շրջապատի կյանքը...

Անա հնօրյա կալվածատերերը՝ Աֆանասի Իվանովիչը և Պուլխերիա Իվանովնան, մարդիկ, որոնք ուտելուց ու խմելուց բացի, կյանքից ուրիշ ոչ մի սպասելիք չունեն, մարդիկ, որոնց կյանքը խղճուկ է և անպատակ: Նույն պատկերն է տրվում «Պատմվածք այն մասին, թե ինչպես գժտվեց Իվան Իվանովիչը Իվան Նիկիֆորովիչի հետ» գործում: Երկու ազնվական, որոնք մոտ հարևաններ են, հանկարծ մի չնչին առիթով, վիճում և վիրավորում են իրար: Նրանք բշնամանում են և այդ ոչնչից ստեղծված մեծ աղմուկը շարունակվում է տարիներ...

Հեղինակն այս պատմվածքները սկսում է երգիծանքով և ավարտում տխրությամբ:

Կյանքն ավելի խորն է տրվում այն ստեղծագործություններում, որտեղ արդեն նա ցարական չինովնիկների առօրյան է պատկերում:

Անա խեղճ, ստորին աստիճանավոր Ակակի Ակակիևիչ Բաշմաչկինը («Շինել»), ամենքի կողմից ծաղրված, ստորացված մի մարդ: Նրա կյանքն անցնում է միևնույն սեղանի մոտ, միևնույն աշխատանքի մեջ, միշտ նեղ, ճղճիմ, քարացած վիճակում... Մենք ծիծաղում, բայց և թախծում ենք նրա համար:

Գոգոլը գունավոր ապակիների միջից չի նայում կյանքին. նա տալիս է կյանքն այնպես, ինչպես որ կա, առանց ավելորդ զարդարանքների: Նրա երգիծանքը գնալով ուժեղանում և նպատակասլաց է դառնում: Այդ իմաստով հետաքրքիր է «Քիթը»:

Սափրիչն առավոտյան ուզում է նոր թխած հաց ուտել: Կտրում է հացը և հանկարծ հացի միջից դուրս է գալիս մի քիթ: Պարզվում է, որ դա պատկանում է ցարական պաշտոնյա Կովալյովին: Այնուհետև հեղինակը իր պատմությանը տալիս է ֆանտաստիկ ձև, նկարագրում է քթի արկածները, նրա թափառումները քաղաքում: Քիթն իր վրա է հրավիրում շատերի ուշադրությունը, նույնիսկ ցարական հիմնարկների...

Այստեղ արդեն Գոգոլը ցույց է տալիս, թե ցարական հիմնարկները ինչպիսի դատարկ գործերով են զբաղվում:

Այդ սպանիչ երգիծանքն իր գագաթնակետին հասավ նրա հանճարեղ երկերում՝ «Ռևիզորում» և «Մեռած հոգիներում»: Այս երկուսի նյութը Գոգոլին տվել է Պուշկինը:

1836 թվին Պետերբուրգի թատրոնում բեմադրվեց «Ռևիզորը»: Ռուս հասարակությունը Գրիբոյեդովի «Խելքից պատուհաս» կոմեդիայից հետո այդպիսի հիանալի ստեղծագործություն բեմում դեռ չէր տեսել:

««Ռևիզորում»,— գրում է Գոգոլը,— ես որոշեցի հավաքել Ռուսաստանում եղած բոլոր վատը, ինչ ես այն ժամանակ գիտեի, բոլոր անարդարությունները, որոնք կատարվում են այն տեղերում և այն դեպքերում, որտեղ մարդկանցից ամենից ավելի շատ էր պահանջվում արդարություն և միանգամից ծիծաղել ամեն ինչի վրա»:

Բայց հեղինակի ծիծաղն այստեղ վերածվեց սպանիչ ծաղրի տիրապետող կարգերի նկատմամբ: Այստեղ ցույց էր տրվում նորտատիրական Ռուսաստանի պատկերը: Հեղինակը ճշմարտացի ձևով նկարագրում էր ցարական պաշտոնյաների այլասերված կյանքը, մերկացնում նրանց նեխված բարքերը: Առանձնապես Գոգոլը մերկացնում էր փողի զգվելի պաշտամունքը, ցարական պաշտոնյաների կաշառակերությունը, որն անասելի չափերի էր հասել:

Ռուս հասարակության առաջավոր մասը ողջունեց հեղինակին, իսկ հետադեմ խավերը, նույն քաղաքագլուխներն ու խլեստակովները, զինվեցին Գոգոլի դեմ:

Եվ անա Գոգոլը «Ռևիզորի» առաջին ներկայացումից հետո մեկնեց արտասահման: Հալածանքի օրե-

րին նա հաճախ էր կրկնում. «Կոմիկական գրողին հայրենիքում տեղ չկա»:

Նա դեռ Ռուսաստանում սկսել էր «Մեռած հոգիները» և նույնիսկ հատվածներ էր կարդացել Պուշկինի մոտ: «Երբ ես սկսեցի Պուշկինի համար կարդալ «Մեռած հոգիների» առաջին գլուխները,— գրում է Գոգոլը,— ապա Պուշկինը, որը միշտ ծիծաղում էր իմ կարդալու ընթացքում... քիչ-քիչ սկսեց ավելի ու ավելի մռայլվել... Երբ ընթերցումը վերջացավ, նա թախծոտ ձայնով արտասանեց. «Աստված, ինչպե՜ս տխուր է մեր Ռուսաստանը»:

1841 թվի նոյեմբերին Գոգոլը վերջացրեց «Մեռած հոգիների» առաջին մասը: Երբ նա ձեռագիրը ներկայացրեց տպագրության թույլ տալու համար, գրաքննիչը կարդալով պոեմի վերնագիրը, ասաց.

— Ո՛չ, այդ ես երբեք թույլ չեմ տա: Հոգին լինում է անմահ: Մեռած հոգի չի կարող լինել: Հեղինակը զինվում է անմահության դեմ:

Իսկ երբ գրաքննիչին հասկացրին, թե դա բոլորովին էլ կապ չունի կրոնի հետ և խոսքը վերաբերում է ճորտատեր շնչերին, գրաքննիչն ավելի խռովացավ.

— Ո՛չ, գոռաց նա,— այդ առավել ևս չի կարելի թույլ տալ... Այդ նշանակում է, որ ճորտատիրական իրավունքի դեմ է:

Եվ ձեռագիրն արգելվեց: Երկար չարչարվեց Գոգոլը. բազմաթիվ մարդկանց դիմեց նա, մինչև որ վերջապես 1842 թվի մարտի 9-ին արգելքը վերացվեց և մարտի 21-ին հանճարեղ երկը լույս տեսավ:

Հայրենիքից հեռու, այդ պոեմը գրելիս, մեծ հայրենասեր Գոգոլը, կարծես թե իրեն զգում էր Ռուսաստանում: Նա սիրում էր Ռուսաստանը, ռուս ժողովրդին, և նրան միշտ էլ գրավեցնում էր Ռուսաստանի նակատագիրը:

Հենց դրա համար էլ նա ինչպես «Ռևիզորում», այնպես էլ «Մեռած հոգիներում» դատապարտում էր ցարական կարգերը, նրա անմարդկային օրենքները: Գոգոլը որպես մեծ գեղարվեստագետ՝ խորտակիչ հարված էր հասցնում ճորտատիրական Ռուսաստանի հիմքերին: Մեծ էր նրա հավատը ռուս ժողովրդի անսպառ ուժերի նկատմամբ: Եվ նա ցույց էր տալիս, որ «Մեռած հոգիները» ոչ թե ճորտերն են, այլ ճորտատերերը, Չիչիկովները, Սոբակևիչները, Նոզդրյովները և այլն:

Նա ձգտում էր «Մեռած հոգիների» երկրորդ մասում ստեղծել վերածնված տիպեր: Բայց նիկոլայական ռեժիմը մեծ հայրենասերին այդպիսի նյութ չտվեց: Դրա համար էլ նա երեք անգամ գրեց և այրեց երկրորդ մասը: Իսկ մեզ այդ մասից հասան միայն առանձին գլուխներ:

Գոգոլի ստեղծագործությունները ռուս ժողովրդին օգնեցին ինքնագիտակցության գալու:

Մեծ գրող Գոգոլի գրական սաներն են եղել այնպիսի խոշոր հեղինակներ, ինչպիսիք են Նեկրասովը, Գոնչարովը, Տուրգենևը, Գրիգորովիչը: Գոգոլի երկերի մասին իր ժամանակ հիացմունքով են խոսել Բելինսկին և Չերնիշևսկին: Գոգոլին սիրել և գնահատել են մեծ առաջնորդներ Լենինը և Ստալինը:

Գոգոլի մահվանից անցել է 100 տարի: Նրա գրական մեծ ժառանգության տերը այսօր սովետական ժողովուրդն է: Մեզ համար Գոգոլի երկերը ոչ միայն անցյալի պատմության գեղարվեստական փայլուն փաստաթղթերն են, այլև այսօր էլ մեղադրականներ են ուղղված ժամանակակից Ամերիկայի և Անգլիայի Չիչիկովների դեմ, որոնք փորձեր են կատարում մարդկությանը ստրկացնելու համար:




Ն. Վ. ԳՈԳՈԼ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

(Հատված վիպակից)

*Դնեստր գետի զառիվայր ափին բարձրացել էր բերդը, և երևում էին նրա պատռված պատնեշը ու ավերակ պարիսպների բեկորները: Խիճով և փշրած աղյուսով էր պատած սրածայր ժայռի կատարը, որ ամեն րոպե կարող էր պոկվել և գլորվել անդունդը: Այդտեղ էլ երկու կողմից, որ նայում էին դեպի դաշտը, նրան օղակեց թագավորական հեթման Պոտոցկին: Կոզակները չորս օր կռվեցին և պայքարեցին, թշնամու գլխին թափելով քարերը և աղյուսները: Սակայն վերջացավ պաշարը, նրանք ուժասպառ եղան, և Տարասը վճռեց ճեղքել թշնամու օղակը: Եվ կոզակներն արդեն համարյա պատռել էին շղթան և գուցե թե նրանց արագավազ ձիերը մի անգամ էլ հավատարիմ ծառայեին նրանց,—երբ հանկարծ, հենց սրընթաց վազքի ժամանակ Տարասը կանգ*



առավ և բղավեց. «Կա՛ց, չիբուխս թութունի հետ ընկավ. չեմ ուզում, որ չիբուխս էլ ընկնի թշնամու ձեռքը»։ Եվ կռացավ ծերունի ատամանը, խոտերի մեջ սկսեց փնտրել ծխախոտի ամանը և ծխամորճը, որ նրա անբաժան ընկերն էր և՛ ծովերի վրա, և՛ ցամաքում, և՛ կռիվների մեջ, և՛ տանը։ Իսկ այդ ժամանակ վրա վազեց մի հրոսակախումբ և բռնեց նրա զորեղ բազուկները։ Նա փորձեց թափահարել ոտքերն ու ձեռքերը, բայց առաջվա նման գետին չգլորվեցին նրան բռնող հայդուկները։ «Հե՜յ գիտի ծերություն», ասաց նա, և լաց լացեց հաղթանդամ և ալեհեր կոզակը։ Բայց հանցավոր չէր ծերությունը. նրանց ուժը հաղթել էր Տարասին. երեսունից ավելի մարդ էր կախվել նրա ձեռքերից և ոտքերից։ «Բռնվեցի՜ր, ագռավ», աղաղակում էին լեհերը։ «Հիմա հարկավոր է միայն մտածել, թե ինչպիսի պատիվ տանք այս շանը»։ Եվ հեթմանի թույլտվությամբ որոշեցին նրան կենդանի վառել բոլորի առաջ։ Հենց այդտեղ մի մերկ ծառ կար, որի կատարը փշրվել էր կայծակից։ Երկաթե շղթաներով Տարասին քաշ տվին ծառի բնի մոտ, բևեռներով մեխեցին նրա ձեռքերը և նրան ավելի վեր բարձրացնելով, . որպեսզի ամեն կողմից կոզակը երևար, սկսեցին ծառի տակ խարույկ պատրաստել։ Սակայն խարույկին չէր նայում Տարասը և ոչ էլ մտածում էր կրակի մասին, որով պատրաստվում էին նրան վառել. այդ սիրելի մարդը նայում էր այն կողմը, որտեղ հրաձգությամբ պաշտպանվում էին կոզակները. բարձունքից նա ամեն ինչ պարզ տեսնում էր։ «Գրավեցե՛ք, տղերք, իսկույն գրավեցեք», բղավեց նա, «այն բլուրը, որ անտառի այն կողմն է. նրանք այդ բլուրին չեն մոտենա»։ Սակայն քամին նրա խոսքերը տեղ չհասցրեց։ «Ա՜հ, պիտի կորչեն, իզուր պիտի կորչեն», համարձակ ասաց նա և նայեց ներքև, որտեղ շողում էր Դնեստրը։ Նրա աչքերում փայլատակեց ուրախությունը։ Նա տեսավ երեք նավախել, որ երևացին մացառուտի ետևից, և որքան ուժ ուներ, գոռաց սաստկաձայն. «Դեպի ափը, տղերք, դեպի ափը, իջեք բլուրի տակով, ձախ կողմով իջեք։ Ափի մոտ նավակներ են կանգնած, բոլորը տարեք, որպեսզի հետամուտ չլինեն»։

Այս անգամ քամին փչեց մյուս կողմից, և կոզակները լսեցին նրա բոլոր խոսքերը։ Բայց այդ խորհրդի համար կացնի կոթով այնպես զարկեցին նրա գլխին, որ աչքերի առաջ ամեն ինչ շաղվեց։

Բլուրի տակով կոզակները շտապ իջան, նրանց թիկունքից՝ հետապնդողները։ Կոզակները տեսան, որ ճանապարհը խառնվում, ծռվում է և ունի շատ ավելորդ կեռմաններ։ «Է՜, ընկերներ, էլ տեղ չկա», ասացին բոլորը, մի ակնթարթ կանգ առան, բարձրացրին մտրակները, շառաչեցին մտրակները, և նրանց թաթարական ձիերը, գետնից պոկվելով, օձի պես ձգվեցին օդի մեջ, թռան անդունդի վրայով և շրմփացին ուղիղ Դնեստրի մեջ։ Միայն երկու հոգի չհասան մինչև գետը և բարձունքից ընկան քարերի վրա, այնտեղ հավիտյան կորան իրենց ձիերի հետ և նույնիսկ չկարողացան աղաղակ արձակել։ Իսկ կոզակները ձիերի հետ լողում էին գետի մեջ և արձակում էին նավակները։ Անդունդի եզրին լեհացիները կանգ առան, կոզակների չլսած քաջագործության վրա զարմանալով. կանգ առան և մտածեցին՝ թռչե՞լ, թե ոչ։ Մի երիտասարդ՝ ժիր ու տաքարյուն, որը խեղճ Անդրիին հրապուրող չքնաղ լեհուհու հարազատ եղբայրն էր, երկար չմտածեց և ամբողջ թափով ձիու հետ իրեն նետեց կոզակների ետևից։ Օդի մեջ ձիու հետ նա երեք անգամ պտույտ արեց և ուղղակի զարկվեց՝ սրածայր քարերին։ Սուր քարերը նրան կտոր-կտոր քրքրեցին և նա կորավ անդունդում, և նրա ուղեղն արյան հետ

*խառնվելով ցայտեց անդնդի պատերին բուսած թփերի վրա:*

*Երբ Տարաս Բուլբան հարվածից սթափվեց և նայեց Դնեստրին, կոզակներն արդեն նավերի վրա էին և թիավարում էին. վերևից նրանց վրա էին տեղում գնդակները, բայց գնդակները նրանց չէին հասնում: Եվ ուրախությամբ բոցկլտացին ծերունի ատամանի աչքերը:*



*«Մնաք բարո՜վ, ընկերնե՛ր» վերևից կանչեց նա նրանց. «Հիշեցե՛ք ինձ և եկող գարնանը նորից այստեղ եկեք և մի լավ զվարճացեք: Ի՞նչ, կերա՞ք, անիծված լեհեր: Մի՞թե կարծում եք, որ աշխարհում մի բան կա, որից վախենա կոզակը...»*

*Իսկ խարույկի բոցն արդեն բարձրանում էր, և կրակը հափշտակում էր նրա ոտքերը, և բոցերով բռնկվում էր ծառը... Բայց մի՞թե աշխարհում կան այնպիսի կրակներ, տառապանք և այնպիսի ուժ, որը հաղթի ռուսական ուժին:*

*Փոքր գետ չէ Դնեստրը և շատ գետախորշեր, թանձր եղեգնուտներ, ծանծաղուտներ և խորանդունդ տեղեր ունի, փայլում է գետի հայելին, և հնչում են կարապների աղիողորմ ճիչերը, հպարտ ջրասույզ բադն արագ սլանում է ջրերի վրա, և բազմաթիվ կտցարներ, կարմրաքուջ գետահավեր և ուրիշ այլ թռչուններ ապրում են եղեգնուտներում և գետափին: Աշխույժ լողում էին կոզակների երկդեկանի նավակները, կոզակները համերաշխ թիավարում էին, զգուշությամբ խույս տալիս ծանծաղուտներից, անհանգստացնելով վեր ճախրող թռչուններին և զրուցում էին իրենց ատամանի մասին:*

## ՄԱՅԻՍՅԱՆ ԳԻՇԵՐ...

Ն. Վ. ԳՈԳՈԼ

(Հատված)

Տեսե՞լ եք դուք արդյոք ուկրաինական գիշերը. օ՜, դուք չեք տեսել ուկրաինական գիշերը: Լավ նայեցեք դուք նրան: Երկնքի կենտրոնից նայում է լուսինը: Անծայր երկնակամարն ահա տարածվեց, լայնացավ և ավելի անսահման դարձավ: Վառվում ու շնչում է նա: Ամբողջ երկիրը արծաթյա լույսի մեջ է. օդը հրաշալի է՝ և՛ զով ու տոթ, և՛ նազանքով լեցուն. և շարժում է նա բուրմունքների օվկիանոսը: Աստվածային գիշե՜ր, դյութական գիշե՜ր... Անշարժ դարձան, շունչ առան անտառները խավարով լի, և փռեցին իրենց վիթխարի ստվերները: Լուռ ու հանդարտ են լճակները. նրանց ջրերի խավարն ու սառնությունը մռայլորեն պարփակված են այգիների մուգ կանաչ պատերի մեջ: Կեռասենիների ու բխենիների կուսական թավուտները վախվխելով մեկնել են իրենց արմատները աղբրակների սառնության մեջ և մերթընդմերթ շշնջում են տերևներով, ասես բարկանում ու վրդովվում են, երբ հիասքանչ զեփյուռը՝ գիշերային քամին գողունի մոտենում է հանկարծակի, համբուրում նրանց: Ամբողջ դաշտավայրը քնած է: Բայց վերևն ամեն ինչ շնչում է, ամեն ինչ սքանչելի է, ամեն ինչ հանդիսավոր: Իսկ հոգու մեջ և՛ անսահման է, և՛ հրաշալի է. և արծաթյա տեսիլները սլացիկ ծագում են նրա խորքում: Աստվածային գիշե՜ր, դյութական գիշե՜ր... Եվ հանկարծ ամեն ինչ կենդանացավ. և՛ անտառները, և՛ լճակները, և՛ տափաստանները: Տեղում է ուկրաինական սոխակի վսեմ դայլայլը. և թվում է, թե լուսինն անգամ ունկնդրում է երկնքի կենտրոնում... Դյութվածի նման բլրի վրա նիրհում է գյուղը:

# ՔՆՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՄՈՏԵՆՈՒՄ ԵՆ

*ՍԻՄԱԿ*

Ձեզնից ամեն մեկն էլ շատ լավ գիտե, որ լավ քննություն տալու համար տվյալ առարկայի նյութը լավ պետք է գիտենալ: Դրա համար անհրաժեշտ է նախ դասի ժամանակ շատ ուշադիր լինել. ոչ միայն լավ լսել ուսուցչի պատմածն ու բացատրությունները, այլև ընկերներին, երբ նրանք դաս են պատասխանում, հետևել խնդիրները լուծելուն և զանազան փորձերին, լիակատար կերպով մասնակցել դասին, չհասկացածը հարցնել ուսուցչին: Մյուս կողմից էլ անհրաժեշտ է տված դասը բարեխղճորեն սովորել. կատարելապես յուրացնել նյութը: Իհարկե, հիմնականը սա է և ով այսպես չի պարապում, նա լավ քննություն տալ չի կարող, որքան էլ հետո աշխատի և կրկնի:

Շատ մեծ նշանակություն ունի նաև կրկնությունը, որովհետև աշակերտը որքան էլ լավ սովորի, որքան էլ յուրացնի սովորածը, այնուամենայնիվ սեպտեմբերին, հոկտեմբերին սովորածը մանրամասն և լավ հիշել հունիսին, կդժվարանա: Ճիշտ է, հիմնականը նա կգիտենա, բայց մանրամասնությունները, կապակցությունները կմոռանա: Ուստի անհրաժեշտ է կրկնել տարվա երկրորդ կեսից սկսած և հատկապես մարտ ամսից: Ապրիլին և մայիսին անցածը դեռ թարմ է լինում հիշողության մեջ և թեթևակի կրկնությունն էլ բավական է:

Կան առարկաներ, որոնք շարունակ կրկնվում են: Օրինակ՝ քերականությունը կամ թվաբանությունը: Նրանց կրկնելը շատ քիչ ժամանակ կպահանջի. բայց և այնպես կրկնությունն անհրաժեշտ է:

Այժմ ես ուզում եմ մի քանի խորհուրդներ տալ այդ մասին: Իմ կարծիքով, որը հիմնված է երկար տարիների փորձի վրա, լավ կլինի կրկնելն սկսել մարտ ամսից, երբ համարյա բոլոր առարկաներից ծրագրի հիմնական մասն անցել ենք և նոր նյութի …տ ընդհանուր ամփոփումներ են արվում: Ավելի լավ է կրկնել երկու կամ երեք ընկերով: Երեքից շատ եթե հավաքվեք, ավելորդ խոսակցություններ շատ կլինի և ժամանակ շատ կկորցնեք: Մենակ կրկնելն լավ չէ, որովհետև նախ ձանձրալի է, ապա դժվար: Բացի դրանից ոչ ոք արած սխալը չի նկատի և պարապողի համար պարզ չի լինի, թե ինքը անթերի՞ գիտե նյութը, թե՞ չէ: Լավ կլինի, երբ ընկերներից մեկը համեմատաբար միջակ սովորող լինի, մյուսը՝ ուժեղ. բայց դա, իհարկե, պարտադիր չէ: Ապա պետք է կրկնությունը սիստեմատիկ լինի, այսինքն այն ծրագրով, որով անցել ենք և ոչ թռիչքներով ու խառը: Օրինակ՝ թվաբանությունից. առաջ կոտորակների հանումը կրկնել, հետո բազմապատկումը և ոչ ընդհակառակը. կամ գրականությունից չլինի թե Սայաթ-Նովան կրկնեք Պռոշյանից, Աղայանից հետո: Միշտ կանոնավոր սիստեմով կրկնելն օգտակար է:

Այնուհետև բոլոր առարկաները միակերպ չպետք է կրկնել: Կան առարկաներ, որոնց կրկնությունը միմյանց ստուգելն է: Այսպես օրինակ՝ քերականությունը, մաթեմատիկայի որոշ մասերը, բացի հիմնական օրենքներից. վարժություններ պետք է գրել և խնդիրներ լուծել, ապա միմյանց ստուգել: Իսկ պատմողական առարկաների նյութը պետք է կրկնել միասին, հետո հերթով պատմել և լրացումներ անել: Շատ լավ կլինի և շատ կօգնի յուրացնելուն, երբ կրկնելու ընթացքում կարդաք կրկնելիք նյութի բնագրերը. օրինակ՝ երբ գրականությունից Աղայանն եք կրկնում, կարդաք «Երկու քույրը», երբ Շիրվանզադեն եք կրկնում՝ «Արտիստը» և այլն: Բացի դրանից լավ է կարդալ և այլ աղբյուրներ՝ ամսագրերում, թերթերում.




Երևանի Շևչենկոյի անվան դպրոցի մի խումբ աշակերտներ պիոներական սենյակում կրկնում են անցած դասերը: *Ֆոտո Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ*

բայց միշտ ուշադիր և քննադատական վերաբերմունքով: Պատմության յուրացման համար շատ օգտակար կլինի կարդալ պատմական վեպերը: Օրինակ՝ Հռոմի պատմությունը կրկնելիս «Սպարտակը», իսկ մեր քաղաքացիական կռիվների պատմությունը կրկնելիս՝ «Ինչպես էր կոփվում պողպատը» և այլն. էլ չեմ ասում, որ առարկայի դասագիրքը պետք է օգտագործեք լրիվ չափով: Քիմիան, ֆիզիկան կրկնելիս պետք է ուսուցիչների օգնությանը դիմել՝ փորձերի համար և այլն:

Ձեզնից նա, ով հիվանդության կամ այլ պատճառով որոշ օրեր բացակայել է դպրոցից, պետք է ընկերների օգնությամբ կրկնի իր չանցած նյութը:

Կրկնելու ընթացքում պետք է աշխատել ըմբռնել էականը, հասկանալ, թե տվյալ հատվածում կամ բաժնում ինչն է հիմնականը և դրա վրա ուշադրություն դարձնել:

Հատկապես պատմությունը, գրականությունը կրկնելիս լավ կլինի, եթե թուղթ ու մատիտ ունենաք և գրեք անունները և թվերը կամ քիմիայից՝ ֆորմուլաները: Երբ մարդ տեսածն ու լսածը գրում է իր ձեռքով, դա ավելի է ամրապնդվում հիշողության մեջ:

Մի բան էլ ասեմ. չլինի թե կրկնեք հարցատետրերով: Հարցերով կրկնածը կրկնություն չէ. դա միայն հարցի համառոտ պատասխանն է, իսկ քննության ժամանակ դուք պետք է պատասխանեք ընդարձակ, հիմնավորված, լրիվ և իմաստալից: Բարձր դասարաններում նույնիսկ որոշ առաջաբանով: Հարցատետրով կրկնողը քննության ժամանակ չոր ու ցամաք կպատասխանի և լսող ուսուցիչն ու ընթերակաները գոհ չեն մնա:

Գլխավոր խնդիրներից մեկն էլ այն է, որ քննության նախորդ օրը դու ինքդ զգաս, որ միանգամայն պատրաստ ես և այդ դեպքում քննության կգնաս վստահ և լավ գնահատական կստանաս:

---

**Գրքերի աշխարհում**

# „Դեպի Մոսկվա"


Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*Սոնան, Արան, Մարոն, Յողիկը, Համիկը, Աշոտիկը հավաքվում են Ռուբիկենց տանը, «Մոսկվա-Մոսկվա» խաղալու: Ռուբիկի հայրը օդաչու է և շատ անգամ է որդուն իր հետ Մոսկվա տարել: Երեխաները սիրում են այդ խաղը. իսկ այսօր նրանց ոչ ոք չի խանգարի: Ռուբիկի մայրն հիմնարկից ուշ է տուն գալու: Եվ ահա սկսվում է հետաքրքիր խաղը:*

*Շուռ է տալիս Ռուբիկն իսկույն*
*Աթոռ,*
*Դարակ*
*Ու սեղան,*
*Ինքնաթիռ է շտապ սարքում...*

*«Ուղևորներն» սկսում են տեղավորվել: Սոնան ու իր քույրը Կրեմլի աշտարակ են պատրաստել, որպեսզի նվեր տանեն սիրելի Ստալինին: Արան ուզում է մայրաքաղաքում «Մոսկվիչ» գնել իր համար, Մարոն իր «հիվանդ» տիկնիկին է բուժման տանում, որովհետև «բժիշկները ամենալավ Մոսկվայում են միշտ լինում»: Եվ այսպես, ամեն մեկը մի ցանկությամբ Մոսկվա է գնում: Վերջին րոպեին, երբ Ռուբիկն արդեն ուզում է փակել «օդանավի» դուռը, շնչակտուր մոտ է վազում Աշոտիկը: Պարզվում է, որ սա Մոսկվայից ուզում է «սարքավորում» բերել իրենց բակում կառուցվող էլեկտրակայանի համար...*

*Սկսվում է հիանալի «ճանապարհորդությունը»...*

*Երևանն իր այգիներով մնում է ետևում: Ահա և Սևանա լիճը: Ապա իրար ետևից երևում են Թբիլիսին, Սև ծովը, Սուխումին, Կուբանը, Ռոստովը, դաշտապաշտպան անտառաշերտերը... Վերջապես երևում է Մոսկվան... Հենց «վայրէջքի» պահին ներս է մտնում Ռուբիկի մայրը, և գլխի ընկնելով, թե երեխաները ինչով են զբաղված, ժպտում է ու կարգադրում սենյակը կարգի բերել:*

*Այսպես է ավարտվում Սիլվա Կապուտիկյանի «Դեպի Մոսկվա» մանկական պոեմը, որ հրատարակել է Հայպետհրատի Մանկա-պատանեկան գրականության բաժինը: Գիրքը գրված է պարզ, մատչելի լեզվով, և նկատի ունի կրտսեր հասակի դպրոցականներին: Պոեմը լույս է տեսել նկարիչ Անուշավան Գասպարյանի նկարներով:*

*Խ. ՀՐԱՉՅԱՆ*



# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ *Դրուժինաներում և դպրոցներում*

## «ՄԵՐ ԳՈԳՈԼԸ»

Ալավերդու ռուսական միջնակարգ դպրոցի աշակերտները պատրաստվում են արժանավոր ձևով նշելու ռուս մեծ գրող Նիկոլայ Վասիլևիչ Գոգոլի մահվան հարյուրամյակը։ Նրանք պատրաստում են մեծ գրողին նվիրված երեկո։ Այդ երեկոյին գրական խմբակը ցուցադրելու է «Մեր Գոգոլը» գրական-երաժշտական մոնտաժը։ Մոնտաժը կազմված է գրողի համառոտ կենսագրությունից, նրա պիեսների տեսարաններից և այլ նյութերից։ Գոգոլի «Ռևիզոր» կոմեդիայից և «Գիշերը ծննդից առաջ» վիպակի ինսցենիրովկայից տեսարաններ կբեմադրեն մի խումբ աշակերտներ։ Գրական խմբակի անդամները կարտասանեն հատվածներ Գոգոլի մյուս ստեղծագործություններից և կերգեն նրա ժամանակաշրջանի ռուսական և ուկրաինական երգեր։

Գոգոլյան օրերին ջոկատները կնրատարակեն պատի և ֆոտո-թերթեր, նվիրված գրողի կյանքին ու գրական գործունեությանը։

*Գ. ԲԱԳԴԱԼՅԱՆ*

## ԱՌԱՆՑ «ԵՐԿՈՒՍՆԵՐԻ»

Մեր ջոկատի պիոներները ամեն ինչ անում են, որպեսզի տարեվերջի քննություններին դիմավորեն կազմ ու պատրաստ, առանց «երկուսների»։ Շատերը արդեն սկսել են կրկնությունները։ Ովքեր առաջին, երկրորդ քառորդներում անբավարար գնահատականներ ունեին, այժմ լարված կերպով աշխատում են, որպեսզի վերջին քառորդում «2»-ներ չունենան։ Նրանց օգնում են ջոկատի առաջավոր աշակերտները։ Հրաչիկ Բաղդասարյանը առաջին քառորդում ուներ «3» և «2» գնահատականներ, իսկ այժմ նա միայն 4 և 5 է ստանում։

Մեր ջոկատի պիոներները որոշել են քննությունների գնալ առանց «երկուսների»։

*ՍԱՇԱ ՀԱԿՈԲՅԱՆ*

*(Արթիկի շրջանի Հնաբերդ գյուղի միջնակարգ դպրոցի 6-րդ ա դասարանի աշակերտ)։*

## ՄԵՐ ՕՂԱԿՈՒՄ

Անչափ հետաքրքիր է անցնում կյանքը մեր օղակում։ Մենք էքսկուրսիաներ ենք կազմակերպում, գրքասանքի ենք գնում, զբաղվում ենք սպորտով և զանազան խաղերով։ Այս բոլորի հետ միասին մենք չենք մոռանում, որ մեր ամենահիմնական խնդիրը ուսումն է։ Մեր օղակի պիոներներն արդեն սկսել են կրկնությունները։ Ընդհանուր ուժերով օգնում ենք ետ մնացողներին։

Այս տարի մեր օղակը էքսկուրսիայի գնաց Ստեփան Շահումյանի Տուն-թանգարանը և Օսլայի գործարանը։ Էքսկուրսիաներն օգնում են մեզ ավելի խորացնելու դպրոցում ձեռք բերած գիտելիքները։

Ձմռանը մենք շատ էինք սիրում դուրս գալ դահուկային արշավների։ Մենք մասնակցեցինք նաև մեր և Պուշկինի անվան դպրոցների դահուկային մրցումներին։

*ԱՐԻԵՏԱ ՆԻԿՈՂՈՍՅԱՆ*

*(Ստեփանավանի Ստալինի անվան միջնակարգ դպրոցի 5-րդ բ դասարանի աշակերտուհի 2-րդ օղակի օղակավար)։*

## ՇԱԽՄԱՏ

*Երեխանե՛ր, լուծեցեք այս խնդիրները և պատասխանները ուղարկեցեք մեր ամսագրի խմբագրությանը։*

Բաժինը վարում է շախմատի միջազգային վարպետ
Հ. ԿԱՍՊԱՐՅԱՆԸ

ԽՆԴԻՐ № 1



*Մատ 2 քայլից*

ԽՆԴԻՐ № 2



*Մատ 3 քայլից*

## ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ




Այս վանդակներում գրված տառերը վերադասավորեցեք այնպես, որ կարդացվի ռուս առաջավոր գիտնական, բնության մեծ վերափոխիչ Ի. Վ. Միչուրինի մի հայտնի ասույթ:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը նկ. *Է. ՍԵՐՈԲՅԱՆԻ*
Չորրորդ էջը՝ *Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ*




Журнал „Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԲԱՏԻԿՅԱՆ ՀՐ., ԻՍԱԲԵԿՅԱՆ Է., ՀԱԿՈԲՅԱՆ Գ., ՄՈՎՍԻՍՅԱՆ Ա., ՍԵՎՈՒՆՑ Գ. *(խմբագիր)*, ՍԻՄԱԿ, ՍԻՄՈՆՅԱՆ Ե., ՏԱԼՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ս.

*Հասցեն՝ Երևան Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 02503, Պատվեր 115. Տիրաժ 5000 Տպագրական 2¼ մամուլ. Ստորագրված է տպագրության 8/III 52 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1952 թ.:*

# 1952 ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

## ՓԱՐԻԶԻ ԿՈՄՈՒՆԱՆ

Գարնան պայծառ առավոտ էր: Փարիզի փողոցներով քայլում էին զինված բանվորներն ու արհեստավորները: Նրանք կարմիր դրոշակներ էին տանում ու ռևոլյուցիոն երգեր երգում: Ապստամբները շտապում էին դեպի Մոնմարտրի բարձունքները: Այնտեղ դրված էին կառավարության թնդանոթները:



Բանվորները կուռ շարքերով մոտեցան զինվորներին: Գեներալը հրամայեց կրակել. բայց զինվորները չենթարկվեցին նրան ու անցան ժողովրդի կողմը: Երեկոյան, բանվորներից կազմված ազգային գվարդիան գրավեց կառավարական հիմնարկները: Իշխանությունն անցավ ժողովրդի ձեռքը:

— Կեցցե՛ կոմունան,— բացականչում էին այս ու այն կողմից:

1871 թ. մարտի 18-ին Փարիզի պրոլետարիատը հաղթանակեց: Կոմունան տևեց յոթանասուն երկու օր: Այդ կարճ ժամանակամիջոցում աշխատավորների դրությունը զգալի կերպով լավացավ:

Բուրժուական կառավարությունը դավաճան Տյերի գլխավորությամբ պատերազմ սկսեց ապստամբած Փարիզի դեմ: Դահիճների կառավարությունը անհեղ դատաստան էր տեսնում կոմունարների հետ:

Փարիզի կոմունան պարտվեց, բայց հետագայում նրանց գործը շարունակեցին բոլոր երկրների պրոլետարներն ու գյուղացիները:

## ԺՈՂՈՎՐԴԻ ԶԱՎԱԿԸ

Այս դեպքը պատահել է առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ ռազմաճակատում: Ձմռան ցուրտ ու խավար գիշեր էր: Հեռվից լսվում էր հրետանու որոտը: Հունգարացի մի խումբ զինվորներ հավաքված գետնափորում ուշադիր լսում էին իրենց հրամանատարին: Երիտասարդ սպան, որի անունն էր Մատիաս Ռակոշի, բացատրում էր զինվորներին, որ չպետք է կռվել ռուսների դեմ, որովհետև նրանք հունգար ժողովրդի բարեկամներն են: Պատերազմից հոգնած զինվորներն արդեն լավ էին հասկանում, որ իրենք արյուն են թափում գործարանատերերի ու կալվածատերերի համար: Եվ ահա նրանք մի օր անցան ռուսների կողմը: Մատիաս Ռակոշին գերիներին ծանոթացնում էր Լենինի և Ստալինի գործերին:

Պատերազմից հետո զինվորները վերադարձան տուն:



Հունգարիայի զինվորները ռուսների օրինակով իրենց երկրում ստեղծեցին Սովետական իշխանություն: Բայց հայրենիքի դավաճանները, անգլիական և ամերիկյան իմպերիալիստների օգնությամբ, իշխանությունը խլեցին բանվոր դասակարգի ձեռքից: Այդ օրերին շատ մարդկանց հետ բանտ նետեցին նաև Մատիաս Ռակոշիին. բայց անվեհեր մարտիկը չէր ընկճվում:

Տարիներ հետո Սովետական Բանակը Հունգարիան ազատագրեց գերմանական ֆաշիզմի լծից: Հունգարիայում հռչակվեց ժողովրդական ռեսպուբլիկա: Նրանք հիմա ապրում են ազատ ու անկախ: Հունգար ժողովուրդը սոցիալիզմ է կառուցում: Այդ գործը ղեկավարում է Աշխատավորական պարտիան, որի առաջնորդն է ժողովրդի հարազատ զավակ Մատիաս Ռակոշին:

## ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԶԻՆՎՈՐԸ

— Ուշադրություն դարձրեք այս պատանուն. աշխարհը մի օր խոսելու է սրա մասին,— բացականչում է Մոցարտը ծանոթանալով Բեթհովենի ստեղծագործություններին:

Անցան տարիներ: Աշխարհն արդեն ճանաչում էր հանճարեղ պատանուն: Լյուդվիգը ընդամենը տասնըմեկ տարեկան էր, երբ կարիքից ստիպված սկսեց նվագել թատրոններում՝ ապրուստի միջոց վաստակելու համար: Բայց պատանին ժամանակ էր գտնում անգամ ստեղծագործելու:



Ֆրանսիական ռևոլյուցիայի օրերին Բեթհովենի ըմբոստ հոգին փոթորկվում էր: Նա տեսնում էր, թե ինչպես ապստամբված ժողովուրդը կռվում էր իր ազատության համար: Այդ բանից ոգևորված Բեթհովենը գրեց Հերոսական Երրորդ սիմֆոնիան: Այս ստեղծագործության մեջ հանճարեղ կոմպոզիտորը պատկերում է ազատության ձգտող մարդուն: Այդ սիմֆոնիան հնչում է որպես ժողովրդական մասսաների կյանքի ու պայքարի հիմն:

Լյուդվիգ վան Բեթհովենի խոհերն ու զգացումները հարազատ են սովետական մարդկանց: Եվ հիմա, երբ աշխարհի առաջավոր մարդիկ ելել են խաղաղության և ազատության պայքարի, հանճարեղ կոմպոզիտորի ձայնն է՛լ ավելի բարձր է հնչում:

Բեթհովենը մեծ ժառանգություն է թողել. նա գրել է բազմաթիվ սիմֆոնիաներ, սոնատներ, կանտատաներ և ուրիշ շատ ստեղծագործություններ, որոնք մինչև այժմ էլ պահպանում են իրենց հմայքը:

# ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ՄԵՐ ԹԵՎԱՎՈՐ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԻՆ



ԲՆԻ ԱՌՋԵՎԻ ՊԱՏԸ





ԲՆԻ ԿՏՐՎԱԾՔԸ



ԲՆԻ ՀԵՏԵՎԻ ՊԱՏԸ








ԲՆԻ ԿՈՂՄՆԱՅԻՆ ՊԱՏԸ
(ՊԱՏՐԱՍՏԵԼ 2 ՀԱՏ)



ԲՆԻ ԿՏՈՒՐԻ ՄՅՈՒՍ ԿՈՂՄԸ



ԲՆԻ ՀԱՏԱԿԸ





ԲՆԻ ԿՏՈՒՐԻ ՄԻ ԿՈՂՄԸ

**Բացվել է գարունը: Շուտով կվերադառնան չվող թռչունները: Նրանց լավ դիմավորելու համար պատրաստեցեք բներ նկարում ցույց տրված գծագրերի համաձայն:**